# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

**«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.**

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 3. 90




*Հանձնված է արտադրության 29.12.89 թ.: Ստորագրված է տպագրության 05.03.90 թ., ՎՖ 03423: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 51332: Պատվեր՝ 1533: Գինը՝ 15 կոպեկ:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 23. 12. 89 г. Подписано к печати 05. 03. 90 г. Формат 70×100 1/16. ВФ 03423. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 51332. Заказ 1533. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**

Շապիկը՝ ՍԱՐԳԻՍ ԴԱՎԹՅԱՆԻ, 9 տ. Երևան «Պարետային ժամ»




Համազգայինի «Լևոն Շանթ» մշակութային կենտրոնը

Սփյուռքում հայեցի դաստիարակությունը պայմանավորված է հայկական կրթօջախների և այլևայլ միությունների (մշակութային, մարզական) գոյությամբ: Անշուշտ, հիմնական դեր են կատարում հայկական վ ա ր ժ ա րանները: Ըստ տվյալ երկրում տիրող պայմանների՝ հայկական վարժարանները պետական ծրագրին առընթեր ունեն նաև հայոց լեզվի, հայ մշակույթի և հայոց պատմության ուսուցման դասընթացներ: Մի շարք երկրներում հայերեն նյութերը ուսուցանվում են արտահերթ, այսինքն՝ դպրոցի սովորական ժամերից հետո: Այս պարագային նրանք միօրյա են, երկօրյա կամ կիրակնօրյա: Այլ վայրերում հայերեն նյութերի ուսուցումը ամենօրյա բընույթ ունի: Ահավասիկ այսպիսին է Լիբանանի հայկական վարժարանների պարագան:

Այստեղ գործում են մոտ քսան ազգային, տասը բարեգործական, տասներկու համայնքային վարժարաններ: Դպրոցի առաջին փուլը մանկապարտեզն է, ուր երեխան երեք տարեկանից մուտք է գործում առաջին՝ ծիլ դասարանը: Հաջորդաբար երեք տարի մանկապարտեզ հաճախելով՝ ծիլ, կոկոն և ծաղիկ դասարաններում երեխան վարժվում է ընկերային



Համազգայինի Մելանքթոն և Հայկ Արալեանեան ճեմարանը

# ՀԱՅԵՑԻ ԿՐԹՈՒԹՅՈՒՆԸ ՍՓՅՈՒՌՔՈՒՄ

կյանքի, սովորում տարրական ձեռային աշխատանքներ, հայերեն և արաբերեն տառերը, գրում է և կարդում: Ծաղիկ դասարանն ավարտվում է տարեվերջյան հանդիսությամբ, որի ընթացքում երեխաները ցուցադրում են իրենց սովորածը՝ երգեր, արտասանություններ, պարեր և փոքրիկ բեմականացումներ: Ծաղիկ դասարանն ավարտողը ստանում է համապատասխան վկայական:

Վեց-յոթ տարեկանից երեխան նախակրթականի առաջին դասարանի աշակերտ է, ուր հայերենի և արաբերենի կողքին սովորում է նաև անգլերեն կամ ֆրանսերեն: Ուսուցանվող նյութերից են հայոց պատմությունը, կրոնագիտությունը, իրագիտությունը, աշխարհագրությունը, թվաբանությունը և այլն: Կան նաև երգի, գծագրության և մարմնակրթանքի դասապահեր: Մինչև նախակրթարանի Ե դասարանը բոլոր նյութերը դասավանդվում են հայերեն:

Նախակրթարանին հաջորդում են միջնակարգի չորս և երկրորդականի երեք դասարանները: Լիբանանի մեջ դպրոցական ուսուցումը տևում է 12 տարի, մանկապարտեզի երեք տարիներն էլ հաշված՝ 15 տարի: 11-րդ տարվա ավարտին աշակերտը ստանում է դպրոցը ավարտելու վկայական և մասնակցում պետական քննություններին: 12-րդը համալսարանի նախապատրաստական տարին է, որն ավարտողը ստանում է Բ կարգի բակալավրի կոչում: Նկատի առնելով, որ թե՛ հայ, թե՛ օտար վարժարանի շրջանավարտը պիտի մասնակցի պետական քննությանը, միջնակարգում և երկրորդականում մի շարք նյութեր (աշխարհա-




գրություն, պատմություն) ուսուցանում են արաբերեն, իսկ բնական գիտությունները՝ անգլերեն կամ ֆրանսերեն: Հայերենով ուսուցանվում են, անշուշտ, հայոց լեզուն, հայոց պատմությունը, բարձր դասարաններում նաև մատենագրությունն ու հայ ժողովրդի մշակույթի պատմությունը: Արժե նշել, որ միջնակարգի առաջին դասարանից աշակերտը սովորում է նաև չորրորդ լեզուն՝ անգլիական թեքումով դպրոցի պարագային՝ ֆրանսերեն, և՝ հակառակը:

Դպրոցական օրն ունի 7—8 դասապահ, 2 զբոսանք-դադարով: Դասերն սկսվում են առավոտյան 8-ին և ավարտվում կեսօրից հետո, մոտ երկուսին:

Դպրոցներում գործում են նաև աշակերտական խորհուրդներ, որոնք կազմակերպում են հանդիսություններ ու տոնակատարություններ (ամանոր, ուսուցչաց տոն, վարդանանց տոն, ապրիլի 24, մայիսի 28 և այլն):

Սփյուռքահայ աշակերտն ունի նաև արտադպրոցական կյանք: Լիբանանում գործում են մարզական (հայ մարզական ընդհանուր միություն, հայ մարզական միություն) և մշակութային (համազգային, «Նոր սերունդ») միությունները: Կան նաև պատանեկան միություններ (Հայ հեղափոխական դաշնակցություն, պաշտոնաթերթը՝ «Ռազմիկ», Հայ երիտասարդաց ընկերակցություն և այլն), որոնց գործունեությանը մասնակցում են դպրոցականները: Էական դեր ունեն նաև սկաուտական խմբերը: Այլ խոսքով, մշակութային, մարզական և կրոնական այլնայլ միությունների առօրյայից անմասն չեն մնում մանուկները, պատանիներն ու երիտասարդները:

ՄԱՐԻՆԵ ՄԱՐՏԻՐՅԱՆ

Բեյրութ, «Ազդակ» օրաթերթի աշխատակից

ՀՈՎԻԿ ՀՈՎԵՅԱՆ

## Անի քաղաքի հովվի եկեղեցին

Ժամփորդ մի հովիվ՝ աստծո առաքյալ,
Աղոթելու տեղ չգտավ վանքում,
Հազար վանքի մեջ ազատ տեղ չկար,
Ազգը ծնկաչոք աղոթք էր անում:
Դատարկ քաղաքում հովիվը շրջեց,
Ապա քար բերեց դիմացի լանջից,
Հազարը քիչ էր, մեկն էլ կառուցեց,
Վանքերի դրախտ՝ ձախից ու աջից:
Օտարներն եկան, հողը խլեցին,
Ազգը ծնկաչոք աղոթում էր դեռ,
Միայն ծեր հովվի մեծ եկեղեցին
Թողեցին կանգուն մութ անդունդից վեր:
Հազարը քիչ էր, մեկն էլ կառուցեց,
Հազար ու մի սուրբ, քարե նահատակ,
Օտարը նորից մեր հողը խլեց,
Աղոթում ենք դեռ կամարների տակ:

## Օգոստոսի ձի

Կարմիր լույսեր են աչքերից կաթում,
Ընկնում են առուն կակաչների պես,
Կարմիր ցոլքերը առվակը տանում,
Լցնում է արտը՝ երկնքին ի տես:
Կարմիր լոռեր են աչքերից կաթում,
Լոռերը թռչում, իջնում են ձորը,
Ձին խենթանում է բոցավառ արտում,
Խրխինջով լցնում արտի սափորը:
Սափորը կարմիր խրխինջով լցվում,
Սափորի մեջ՝ լոռ, կակաչ ու հասկեր,
Սափորի կարմիր լոռերն են կտցում
Առվի մեջ կորած երգերս ոսկե:

## Ջոներգ կամուրջին

Գիշերս ու ես կամուրջով անցանք,
Կամուրջը ծաղկեց գարնան դաշտի պես:
Արևս ու ես կամուրջով անցանք,
Կամուրջը ծաղկեց գարնան դաշտի պես:
Ընկերս ու ես կամուրջով անցանք,
Կամուրջը մեր դեմ իր սիրտը բացեց:
Թշնամիս ու ես կամուրջով անցանք,
Կամուրջը փնչաց ու թունդ հայհոյեց:
Կամուրջը քարե՝ պապերի սարքած,
Կամուրջը գիտուն՝ դարերի պարծանք,
Լռեց, քարացավ և տխրեց հանկարծ,
Երբ տառապանքս ու ես հոգնած անցանք:



Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

***

Իմ ձեռքերը բավական չէին,
Եվ ես վերցրեցի անտառների ծառերը
Քեզ փայփայելու համար:
Իմ աչքերը բավական չէին,
Եվ ես վերցրեցի Բյուրականի աչքերը
Քեզ տեսնելու համար:
Իմ լեզուն աղքատ էր այնքան,
Եվ ես սովորեցի բարբառներդ հակինթ
Քեզ հասկանալու համար:
Իմ երգն օտար էր, անմիտ,
Եվ ես սերտեցի մագաղաթներիդ լույսը
Քեզ գովերգելու համար:
Իմ ճամփան անհայտ էր ու շեղ,
Եվ ես վերցրեցի լեռներիդ արահետները
Դեպի աստղերդ քայլելու համար:
Իմ միտքը թույլ էր ու տկար,
Եվ ես կրկնեցի պապիս աղոթքները
Քեզ ճանաչելու համար:
Երկիր հայրենի, արծվաբույն բարձրիկ,
Քո արծիվներից թևեր, դարեր տուր ինձ
Սեգ երկնքիդ տակ ապրելու համար...

ԱՐՄԵՆ ՇԵԿՈՅԱՆ




Հազար ինը հարյուր վաթսուն թվականին, երբ մեր Հակոբ Հակոբյանի փողոցը որոշ ընդմիջումից հետո դարձյալ վերանվանեցին Մարքսի 4-րդ փակուղի, հորս արհեստն առաջին անգամ փողոցին պետք եկավ: Ամիսուկես շարունակ հայրս աշխատանքից հետո նստեց ու իրեն հատուկ բարեխղճությամբ գրեց-նըկարեց փողոցի նոր ցուցանակներն ու դռների համարները: Փողի մասին թաղային լիազոր Խունկիանոսի հետ նախորոք պայմանավորվածություն չկար, չէր եղել, բայց հայրս գործն արեց խընամքով ու բարձրորակ, որովհետև ներքուստ ուրախ էր, որ ինքը վերջապես փողոցին պետք եկավ: Այդ տարի, հիշում եմ, ես նոր-նոր առաջին դասարան պիտի գնայի, բայց նախադպրոցական ու դըպրոցական տառապանքներն ինձ համար վաղուց արդեն սկսվել էին: Մայրս ուսուցչուհի էր և իր մտքում նպատակ էր դրել սեպտեմբերի մեկին ինձ հարյուր տոկոսով կազմ ու պատրաստ տանել դպրոց: Իմ սեպտեմբերի մեկին դեռ մի քանի ամիս կար, բայց ես արդեն փողոցի առաջին դասարանցիների չափ բան գիտեի: Տարեկիցներս ազատ ու անհոգ ամբողջ օրը խաղում էին, իսկ ես ողջ օրը գամված էի այբբենարանին ու թվաբանության աղյուսակին: Հիմա հաստատ չեմ հիշում՝ մորի՞ցս էի վախենում, թե՞ իր նպատակին էի հավատ ընծայում, բայց պարզ հիշում եմ, որ իմ տնային վաղաժամ դպրոցն ինձ հոգնություն ու զզվանք էր պատճառում: Երբ հայրս սկսեց ցուցանակներն ու համարները գրել, իմ չարչարանքները պակասեցին, որովհետև մեր պստիկ ու նեղլիկ սենյակում հայրս տարածություն ու օդ էր պահանջում: Ես, վերստին միացած անհոգ ու ազատ թռչկոտող տարեկիցներիս, ժամանակ առ ժամանակ տուն էի մտնում, որովհետև հորս գրած տառերին ու թվերին նայելը նույնպես հետաքրքիր էր: Հայրս տրաֆարետը դնում էր կապույտ ներկված թիթեղին, սպունգը թաթախում էր սպիտակ յուղաներկի մեջ և սպունգով ներկում էր տրաֆարետի կտրած արանքները: Հետո տրաֆարետը կտրուկ-ուղղահայաց բարձրացնում էր, և կապույտ թիթեղին համարը գրված էր լինում: Համարը գրված էր լինում, ճիշտ է, բայց դա վերջնական վիճակ չէր, որովհետև ներկը որոշ չափով միշտ էլ տրաֆարետի արանքներից ծոռած էր լինում: Հայրս ներկի ծորալու վըրա շատ էլ ուշադրություն չէր դարձնում, որովհետև չորանալուց հետո, միևնույն է, վրան վրձինով մանրակրկիտ աշխատելու էր: Չորանալուց հետո, հաջորդ օրը հայրս կապույտ ներկով էր աշխատում. ֆոնի գույնով հավասարեցնում էր ճերմակ տառերի ու թվերի եզրագծերը: Հորըս աշխատանքն ամիս ու կես տևեց, և ամիս ու կես անց մեր դռներին շողշողում էին ցուցանակները:

Թաղային լիազոր Խունկիանոսի քթի տակի երկամսյա գաղտնախորհուրդ ու թաքուն ժպիտը շատ շուտով վերածվեց հին փողով չորս հազար յոթ հարյուր ռուբլի մաքուր դրամի: Իմ սեպտեմբերի մեկին դեռ երկու ամիս կար, երբ հայրս ցուցանակների փողերն ստացավ: Փողի մուտքի հետ մեր տանը թունդ վեճ ծայր առավ.

— Հեռուստացույց առնենք,— առաջարկում էր հայրս:

— Հեռուստացո՜ւյց, հեռուստացո՜ւյց,— ոգևորված հաստատում էինք ես ու քույրըս:

— Դաշնամուր պիտի առնենք,— պընդում էր մայրս, և մենք ներքուստ զգում էինք, որ մորս ասածով կլինի:

— Ես դաշնամուրի համար իզուր տեղն էսքան չէի չարչարվի,— ասում էր հայրըս:

— Դու էդ գործը ձրի էլ կանեիր: Դու որ սկսեցիր՝ չգիտեիր էլ, որ փող են տալու:

— Ախր, ա՛յ կնիկ, դաշնամուրն ինչների՞ս է:

— Չես ուզո՞ւմ, որ երեխեքդ նվագել սովորեն, մարդ դառնան:

— Մենք որ նվագել չգիտենք, մարդ չե՞նք:

— Քո հասկացողությամբ՝ մարդ ենք:

— Բա քո հասկացողությա՞մբ ինչ ենք:



— Իմ հասկացողությամբ՝ կիսատ-պըռատ մարդիկ ենք:
— Ախր դաշնամուր դնելու տեղ էլ չըկա տանդ մեջ:
— Տեղ կճարվի, անհոգ կաց:
— Իմացած եղիր, որ փեշով փողը ջուրըն ես թափում:
— Ես ստուգել եմ տվել, Արմենի լսողությունը տեղն է: Դաշնամուրի պիտի գնա: Արդեն որոշված է:

Արմենը ես էի, բայց ինձ չէին հարցնում՝ համաձա՞յն եմ, թե՞ ոչ: Անենք ես առարկելու պատճառ ու մտադրություն չունեի էլ, պարզապես ափսոսում էի, որ դաշնամուրը հեռուստացույցի փոխարեն պիտի գնվի: Այն ժամանակ ես չէի էլ մըտածում, որ դաշնամուրն առավել ևս պիտի կրճատի փողոցային խաղերի իմ ժամանակը:

Մի քանի օր անց մեր դաշնամուրը բերման ենթարկեցին: Մերը փողոցի թըվով երկրորդ դաշնամուրն էր, և մայրս արդեն իսկ ուրախ էր ու երջանիկ: Այդ օրերի նրա ուրախությունն այնքան մեծ էր, որ մերթ ընդ մերթ այն փոխանցվում էր նաև մեզ՝ ընտանիքի մյուս երեք անդամներիս: Ինչևէ, մենք գոհ էինք, որ մեր մայրը գոհ է:

Շուտով սկսվեցին երաժշտական դըպրոցի քննությունները: Մայրս որոշեց ինձ քննության տանել միանգամից երկու տեղ՝ Սպենդիարյանի ու Չուխաջյանի դպրոցները: Երկու օր իրար վրա ես պիտի գընայի քննության: «Երկուսից մեկը հաստատ կընդունվենք»,— մտածում էինք մենք:

Ինձ համար սարսափելին ոչ թե քննությունն էր, այլ՝ քննության գնալը: Հատուկ քննության կապակցությամբ մայրս ինձ համար կարել էր ճերմակ վերնաշապիկ, սև կարճ շալվար և չգիտես որտեղից ճարել էր սև կտորից թիթեռանման մի բան, որ, իր ասելով, պիտի կապեի վըզիս: Ես ոչ մի դեպքում այդ տեսքով չէի համաձայնվի անցնել փողոցից մինչև Ծիլաչու կանգառ տարածքը, որովհետև հարևաններն ու ընկերներս կտեսնեին և շատ անհարմար բան կստացվեր: Մայրս էլ, իր հերթին, զգում էի, ոչ մի կերպ չէր համաձայնի առանց թիթեռնիկի ինձ քըննության տանել: Ես չէի զիջում, և ահաահա քննությունից պիտի ուշանայինք, երբ հայրս պարզ ու գեղեցիկ գյուտ արեց:
— Չեմ հասկանում՝ ինչի՞ եք ղալմա-

ղալ անում,— ասաց հայրս:— Քննության տեղն էդ թիթեռը կկապես երեխի վզին:

— Էսքան տարվա մեջ հազիվ մի խելոք բան ասացիր,— մի քիչ մտածելուց հետո ծիծաղելով ասաց մայրս:

Առաջին օրվա քննությունները Սպենդիարյանի անվան դպրոցում էր: Երբ հասանք տեղ, մայրս հետաքրքրվեց, և իմացանք, որ քննության մտած տասնմեկ հոգուց միայն երկուսն են ընդունվել: Մայրս շորերս ուղղեց, կապեց թիթեռնիկը, ու ես ներս մտա:

Ակնոցավոր կինը անուն-ազգանունս հարցրեց, իր թղթերի մեջ անուն-ազգանունս փնտրեց-գտավ, գրիչով նշում արեց ու մոտեցավ դաշնամուրին: Դիմացը նստած երկար բոյով տղամարդն ուշադիր նայեց թիթեռնիկիս, ժպտաց:

— Ես ծափ կտամ, իսկ դու ուշադիր լսիր, որ կրկնես,— նույնպես թիթեռնիկիս նայելով՝ ասաց ակնոցավոր կինը:

Նա արագ ծափ զարկեց տեղ-տեղ դանդաղեցնելով: Ես ուշադիր լսեցի և նույնությամբ կրկնեցի իր ծափը:

— Ապրես: Իսկ հիմա՝ մեկ ուրիշը: Ուշադիր լսիր,— ասաց նա:

Ես այդ մեկ ուրիշն էլ նույնությամբ կրկնեցի:

— Ապրես, շատ ապրես,— ասաց ակնոցավոր կինը,— իսկ հիմա ուշադիր լսիր, թե դաշնամուրով ինչ եմ նվագում, որ կրկնես: Նվագածս երգելով պիտի կրկնես:

Նա մի շատ պարզ բան նվագեց, և ես երգելով կրկնեցի:

— Ապրես,— ասաց նա,— իսկ հիմա մյուսը լսիր:

Մյուսն էլ առաջինի պես պարզ մի եղանակ էր, և ես մյուսն էլ երգելով նույնությամբ կրկնեցի:

— Ծա՛տ ապրես,— ասաց նա:— Կարո՞ղ ես քո իմացած երգերից մի բան երգել:

— Հա,— ասացի ես,— կարող եմ:

— Դե երգիր, լսում ենք,—ասաց նա:

Ես երգեցի «Եվ ուռին է, և կեչին է» երգը և, զգում էի, երգելուս ամբողջ ընթացքում երկար բոյով տղամարդը քթի տակ ժպտալով թիթեռնիկիս էր նայում:

— Ապրես, լավ ես երգում,— ասաց ակնոցավոր կինը:

— Էլ ի՞նչ պիտի անեմ,— հարցրի ես:

— Էլ ոչինչ:— Նա ակնոցի տակից թղթերի մեջ անունս փնտրեց-գտավ ու ասաց,— Ընդունված ես, Արմենչիկ:

— Էլ բան չանե՞մ,— ուրախացա ես:

— Ապրես, բալիկ ջան,— ասաց երկար բոյով տղամարդը,— էլ բան պետք չի, ազատ ես, սեպտեմբերի մեկից դասի կգաս:

— Հը՞,— անհամբեր հարցրեց մայրս, երբ դուրս եկա:

— Ընդունվեցի,— ասացի ես:

Մայրս թշերս պաչեց, հետո մի պահ մտածեց, երևի կասկածեց, քննասենյակի դուռը բաց արեց, ներս մտավ, երևի այնտեղ հարցրեց, համոզվեց ու դուրս եկավ, կրկին թշերս պաչեց, ասաց. «Ապրես, քաղցր ջան, ինձ խայտառակվելուց փրկեցիր»:

— Պաղպաղակ կառնե՞ս,— ասացի ես:

— Հազար հատ կառնեի,— ասաց մայրս,— բայց վախենում եմ կոկորդդ մրսեցնես, ախր վաղն էլ ենք քննության:

— Մի հատ առ, մի հատից բան չի լինի:

—Կառնեմ,—ասաց մայրս,—ինչ ուզես՝ կառնեմ:

— Թիթեռնիկն արդեն պետք չի,— հիշեցի ես, վզիցս պոկեցի ու տվի մորս:

— Հա,— ասաց մայրս՝ թիթեռնիկը պայուսակի մեջ դնելով,— վաղն էլ կկապես ու՝ վերջ:

Հաջորդ օրը ես հաջողությունս կրկնեցի Չուխաջյանի անվան երաժշտական դպրոցում, և երեկոյան արդեն ողջ փողոցը գիտեր, որ ես միանգամից երկու տեղ եմ ընդունվել: Այդ օրը մորս համար երջանիկ օր էր, և հայրս խորովածի պատրաստություն տեսավ: Եկան հորեղբայրս, հորաքույրս, քեռիներս իրենց ընտանիքներով, և մենք միանգամից նշեցինք մեր դաշնամուր առնելն ու իմ երաժշտական ընդունվելը: Իմ քեռի Ալֆրեդը մի մատով «Հովիվը սարում տխրեց» երգը նվագեց և ասաց. «Լավ գործիք է երևում: Բարի վայելում»: Հետագայում նա երաժշտականի իմ քննություններից լեգենդ սարքեց ու տարածեց, իբր՝ ինձ ընդունողը քննությունից հետո իմ մասին ասել է. «Ծոպենը ղալաթ էր արել, որ սրա տարիքում էսքան իմանար»:

Ծոպեն անունն ինձ անմիջապես կպավ:

— Ծոպ,— ասում էին ինձ,— արի ֆուտբոլ խաղանք:

— Ծոպը դու ես,— նեղանում էի ես:

— Թող ես լինեմ, ի՞նչ վատ բան կա դրա մեջ,— համաձայնում էր ինձ Ծոպ



Նկարները՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

ասողը:

— Մի ասա,— պնդում էի ես:

— Որ նեղանում ես՝ էլ չեմ ասի,—զիջում էր ասողը, բայց հաջորդ անգամ ինձ էլի Ծոպ կամ Ծոպեն էր ասում անկախ իրենից, որովհետև այդ անունն ինձ պինդ էր կպել:

Սիրտս նեղվում էր, բայց, ընդհանուր առմամբ, գոհ էի կյանքից, որովհետև մինչև սեպտեմբերի մեկը մայրս ինձ լիակատար ազատություն էր շնորհել, և ազատության իմ երկու ամիսները ես լիուլի վայելեցի:

Սեպտեմբերի մեկից նոր կյանք սկըսվեց: Կյանք չէր՝ չարչարանք ու տանջանք էր թե՛ իմ, թե՛ մորս համար: Բայց, ի տարբերություն ինձ, մայրս այդ անվերջանալի չարչարանքներից հաճույք էր ըստանում: Առավոտյան ինձ դպրոց էր տանում, ինքը գնում էր իր դպրոցը, իր դըպրոցից գալիս ու ինձ իմ դպրոցից տուն էր բերում, արագ ճաշն էր եփում, հետս դասերս էր պատրաստում, դասերիցս հետո մի կարճատև պահ մեր ճաշելուն էր հատկացնում, իսկ այնուհետև հետս մինչև ուշ գիշեր նստում էր դաշնամուրի մոտ, և դաշնամուրից պոկ չէինք գալիս: Հետո, երբ ես հոգնած ու ջարդված քնում էի, մայրս սկսում էր լվացքը:

Փողոցի ու խաղերի մասին խոսք անգամ չէր կարող լինել: Թեև մորս ճաշ եփելու ընթացքում փողոց դուրս գալու ու շունչ քաշելու մի փոքրիկ արանք կար, բայց ես ինքնակամ էի հրաժարվել այդ պատիկ հնարավորությունից, որովհետև մեր խաղերի ամենաթեժ պահին մայրս ինձ տուն էր կանչելու և ես իմ ազատ չլինելն ավելի ու ավելի հստակ էի զգալու:

Մայրս երաժշտությունից ոչ մի գաղափար չուներ, և երաժշտականի իմ դասերից բացարձակապես չէր բացակայում. ինձ հետ զուգահեռ սովորում էր: Եղենա Սերգեևնայի ասածներն ուշադիր լսում, հարցեր էր տալիս, որ երեկոյան ինձ մի կերպ բացատրեր, որովհետև ուսուցչուհու ասածները ես բացարձակապես չէի ընկալում. դաշնամուրն աչքիս փուշն էր: Մորս ամենից շատ դուր էին եկել երաժըշտական տերմինները, և նա, երեկոյան ինձ հետ պարապելիս, մեծ հաճույքով արտասանում էր այդ բառերը:

— Էստեղ ստակատո պիտի նվագես,— ասում էր մայրս:

— Հա,— ասում էի ես ու նվագում էի:
— Զեղավ,— ասում էր մայրս,— էս հատվածում արդեն ալեգրո պիտի գնաս:
— Հա,— ասում էի ես ու մորս խաթեր նվագում էի:
— Պիանո,— ասում էր մայրս:
— Հա,— ասում էի ես ու ինձ ստիպելով նվագում էի:
— Ֆորտե,— ասում էր մայրս:
— Հա,— ասում էի ես ու կատաղած հարվածում ստեղներին:

Նույն տարվա նոյեմբերի վերջերին գլխացավերս սկսվեցին: Բժիշկները դեղ ու ճար չէին առաջարկում, բայց գլխացավերիս պատճառը գիտեին:
— Գերծանրաբեռնվածություն,— միաձայն ասում էին նրանք:
Մայրս շարունակ լաց էր լինում. երևի գլխացավերիս պատճառները երաժշտական իր մոլուցքի մեջ էր գտնում: Ինչևէ, ես որոշ ժամանակ դաշնամուրի չգնացի, և գլխացավերս միանգամից մեղմացան, իսկ շուտով ընդհանրապես վերացան:
«Թող երաժշտականը կորչի գրողի ծոցը»,— մի գեղեցիկ օր հայտարարեց մայրս, և իր այդ որոշումը բոլորիս սրտով էր:
Մայրս առավոտյան ինձ դպրոց էր տանում, հետո ինքը գնում էր իր դպրոցը: Այնուհետև ինքն իր դպրոցից վերադառնում, ինձ իմ դպրոցից տուն էր բերում: Հանգիստ լվացքն էր անում, ճաշն էր եփում, ու ես այդ ընթացքում դասերս ինքնուրույն սովորած-վերջացրած էի լինում, որովհետև այլևս ինձ ստիպող ու շտապեցնող չկար:
— Շոպ,— դրսից կանչում էին ընկերներս, և ես դուրս էի թռչում բակ՝ խաղալու: Ես նրանցից այլևս չէի նեղանում: Գիտեի, որ նրանք վատ իմաստով չեն ինձ Շոպ ասում: Իսկապես, նրանք մեղք չունեին. այդ անունն ինձ լավ էր կպել:
Մայրս, ճիշտ է, ինձ երաժշտականից հանեց, բայց իր ու դաշնամուրի գժտությունը երկար չտևեց: Երբեմն ազատ ժամերին իմ չսովորած դասերն էր նվագում, երբեմն էլ չորս տարեկան քրոջս էր գիրկն առնում, և երկուսով ուրախ տնկտընկացնում էին:
Եվ ես զգում էի, որ մեր դաշնամուրն անհամբեր սպասում է քրոջս մեծանալուն:

# Ո՞ւմ դիկտատուրան պետք է լինի դպրոցում



**Ներկաներից շատերն էին ասում, որ ՀԼԿԵՄ Լենինյան շրջկոմի պլենումները երբեք այդքան գործնական, կարծիքների ու տեսակետների բազմազանության ու իրարամերժության պայմաններում չեն անցել: Մթնոլորտն, իրոք, անհանգիստ էր, հուզառատ ու մտահոգ: Եվ հավաքվածների՝ վետերանների, մանկավարժների, ջոկատավարների, աշակերտների, կոմերիտական ակտիվի, անհանգստությունը մեկն էր. ինչպե՞ս դուրս բերել պիոներական կազմակերպությունը ներկա վիճակից, ինչպե՞ս գտնել աշխատանքների կազմակերպման այնպիսի չափանիշներ ու սկզբունքներ, որոնք թույլ տան թոթափել անցյալից ժառանգած անպատվաբեր բեռը: Հարցադրումներն, իրոք, այժմեական են, անհետաձգելի, որովհետև հասարակական կյանքի նորացման անդառնալի ընթացքն անհնար է ա-**

ռանց դպրոցի համամասնական վերակա-
ռուցման, որովհետև իրար շաղկապված
ամենատարբեր ոլորտների շղթայում
դպրոցը կարևորներից է, եթե ոչ ամենա-
կարևորը:

Հաստատված ճշմարտություն է՝ խըր-
թին իրավիճակներից դուրս գալու պատ-
րաստի դեղատոմսեր չկան: Եվ շրջկոմը
խուսափել էր պլենումի անցկացման ա-
վանդական եղանակներից: Զեկուցում
կամ նախօրոք պատրաստված ելույթներ
չկային: Քննարկման էր ներկայացվելու
աշխատանքների հետագա կազմակերպ-
մանն ուղղված երեք նախագիծ: Առաջի-
նը մշակել էր շրջկոմի համապատասխան
բաժինը, երկրորդը՝ շրջանային պիոներ-
տան մեթոդական բաժինը, իսկ երրորդը՝
ավագ ջոկատավարներն ու պիոներները:
Շրջանային կոմիտեն մեկ այլ նորույթ էլ էր
կիրառել: Նախագծի յուրաքանչյուր կետ
նույն պահին քննարկվում էր, և քննարկ-
վում էր ոչ թե ավանդական «կողմ»—
«դեմ», ձեռնպահ» եղանակով, այլ կար-
միր, դեղին, կանաչ քարտերով, որոնք
համապատասխանաբար արտահայտում
էին բացասական, զգուշավոր, դրական
վերաբերմունք: Որոշ համարձակ առա-
ջարկություններ՝ պիոներական կազմա-
կերպությունը բաժանել պիոներների և
ավագների պալատի, շրջանային պիոներ-
տունը հանել ժողկրթբաժնի իրավասու-
թյունից և հանձնել պիոներխորհրդին, ըս-
տեղծել պիոներական նախաձեռնության
ֆոնդ և այլն, սպիտակ պաստառների վը-
րա փակցված էին դահլիճում: Ինչպես ա-
սում են, գործարար մթնոլորտի արտա-
քին կողմն ապահովված էր: Եվ այսպես,
նախագծի յուրաքանչյուր կետին դահլիճն
աշխուժորեն արձագանքում էր դեղին,
կանաչ կամ կարմիր քարտերով: Բայց,
չգիտես ինչու, այս ամենը մեծահասակնե-
րի կողմից իրականացվող մանկական
խաղ էր հիշեցնում: Թերևս տպավորու-
թյունն այդպիսին չլիներ, եթե նախնական
մտահղացումը հասցվեր ավարտին: Այդ-
պես էլ ներկաներից ոչ ոք չիմացավ, թե
առաջին նախագծի կետերից յուրաքան-
չյուրը քանի «կարմիր», «կանաչ», «դե-
ղին» հավաքեց, թեև նախապես այդ պար-
տականությունները իրականացնող հանձ-
նաժողով էր կազմվել: Ինչևէ, նախագծի
հրապարակումից հետո եղան մի քանի
ելույթներ, բայց շրջանի ռեալ հնարավո-
րությունների վրա խարսխված գրեթե ոչ
մի գործնական առաջարկ չեղավ: Ջոկա-
տավարների կողմից մեկ անգամ ևս
բարձրացվեց բազմիցս ծեծված այն հար-
ցը, թե արդյոք ժամանակը չէ՞ մեկընդ-
միշտ ճշտել՝ ո՞ւմ է ենթարկվում ջոկա-
տավարը՝ դպրոցին, թե շրջկոմին:
Պետք է ասել, որ, իրոք, նորօրյա խըն-
դիրներից ելնող անհրաժեշտություն է
մեկընդմիշտ ճշգրտել այս հարցը: Ավելի
շատ կրքեր բորբոքեց երկրորդ նախագի-
ծը, որի հեղինակները առաջարկում էին
կազմակերպությունը դուրս բերել դպրո-
ցից, կազմալուծել ջոկատներն ու փոխա-
րենը շրջանի ԲՇՏ-ների, բակերի, ար-
տադպրոցական ձեռնարկությունների
բազաների վրա ստեղծել տարատարիքա-
յին ջոկատներ: Այնուհետև, հեղինակնե-
րի ռոմանտիզմը հասավ այնտեղ, որ նը-
րանք ամենայն լրջությամբ առաջարկե-
ցին պիոներիայի շարքերի ընդունելու-
թյան տարիքային սահմանափակումը վե-
րացնել՝ այն դարձնելով 7-ից 70, ընդ ո-
րում՝ այդ պատիվը վերապահելով միայն
«դանկոներին»: Այո, այո, մի զարմացեք՝
այդ վարկածի համաձայն պիոներիան
պիտի դառնար միայն դանկոների կամ
ընտրյալների կազմակերպություն: Իսկ
հետո, ինչպես պարզվեց հետագա քըն-
նարկումից, ապագայի նախագիծը ներ-
կայացնող շրջանային պիոներտան մե-
թոդիստ Լ. Փայծյանը չկարողացավ նշել
որևէ բակ կամ ԲՇՏ, ուր հնարավոր լի-
ներ իրականացնել մտահղացումը, և
ընդհանրապես, շրջանը ոչ էլ տարատա-
րիքային ջոկատի փորձ ուներ: Այնու-
ամենայնիվ, անուրանալի է այն փաստը,
որ նախագծով զգալի տեղ էր առանձնաց-
ված ներդպրոցական դեմոկրատիային,
աշակերտական ինքնավարության հետա-
գա զարգացմանը, հանգամանք, որը զե-
կուցողի կարծիքով կխախտեր «ուսուցչա-
կան դիկտատուրայի» դիրքերը դպրո-
ցում: Թվում էր՝ այս ելակետը պաշտպա-
նություն կգտնի թե՛ ջոկատավարների,
թե՛ մանկավարժների և թե՛ աշակերտնե-
րի շրջանում: Չէ՞ որ այլևս ապացուցելու
կարիք չկա, որ դպրոցի կոմերիտական
և պիոներական կազմակերպությունների
պասիվության և դիմազրկության պատ-
ճառները թաքնված են նաև մեր՝ մեծա-
հասակների կողմից ավելորդ խնամակա-
լության. նրանց գործերին տեղին-անտե-
ղին միջամտելու ու նաև դրանք մեր ճա-
շակին ու ցանկություններին հարմարեց-
նելու մեջ: Բայց բոլորովին էլ ոչ այս դիր-
քերի պաշտպանությամբ հանդես եկավ

№ 69 դպրոցի տնօրեն Նինա Ծատինյանը: «Դպրոցում ուրիշ ինչ դիկտատուրայի մասին կարող է խոսք լինել, եթե ոչ ուսուցիչների»,— առանց թաքցնելու իր զարմանքն ու զայրույթը հայտարարեց տնօրենը,— դպրոցում՝ միայն ուսուցիչների դիկտատուրա»: Նրա կարծիքով՝ անհանդուրժելի էր նաև այն երևույթը, որ շրջանային պլենումը այսպիսի բացախոսություն է թույլ տալիս դպրոցականների ներկայությամբ. «Առանց այն էլ մենք նրանց բերանը շատ ենք լեզու դրել»: Խեղճ դպրոցականներ, երանի չէ՞ր այդպես լիներ,— մտածեցի ես՝ մտովի հիշելով, թե ամեն անգամ ինչ ակնածանքով եմ լսել կենտրոնական հեռուստատեսությամբ «Մինչև 16 և բարձր», «Աշխարհն ու երիտասարդությունը» և այդ կարգի այլ հաղորդումներում ռուս դըպրոցականների անկաշկանդ ու անբռնազբոսիկ խոսքը, բանավիճելու ճկունությունը: Մինչդեռ մեր դպրոցականների ճնշող մեծամասնությունը առաջին իսկ պատահած բարձրախոսից ընկճվում է, էլ չասենք՝ ամբիոններից ու բեմերից: Եվ որպես իր ելույթի վերջաբան՝ Ն. Ծատինյանը, չգիտես դահլիճի համակրանքը շահելու, թե իր դպրոցի վարքը բարձրացնելու նպատակով, հարկ համարեց ընդգծել, որ № 69 դպրոցում ամենևին էլ չեն ոտնահարվում աշակերտների իրավունքները, և, որպես ներդպրոցական դեմոկրատիայի դասական օրինակ, կատարեց հետևյալ հայտարարությունը (ընդ որում՝ հենց դահլիճում, որտեղ դպրոցականների ներկայացուցչությունը պատկառելի էր). «Եթե մեր դպրոցում որևէ ուսուցիչ աշակերտին անվանի ապուշ, ապա աշակերտն իրավունք ունի պատասխանել՝ ապուշը ինքդ ես»: Վերոհիշյալ հայտարարության գնահատումը թողնելով վաստակաշատ ու բազմափորձ մանկավարժներին, այնուամենայնիվ չեմ կարող չանդրադառնալ դիկտատուրա և դպրոց բառերի զուգակցմանը: Չեմ կարող նախևառաջ այն պատճառով, որ դիկտատուրա բառը ենթագիտակցությանս մեջ անբաժան է արդեն ածականական իմաստ ձեռք բերած Պինոչետ և ֆաշիստ բառերից: Ու հանկարծ՝ մանկավարժի շուրթերից հաստատումն այն բանի, որ դպրոցում միայն ու միայն ուսուցիչների դիկտատուրա պետք է լինի, և դա մեր օրերում, երբ խոսք է գնում ներդպրոցական կառավարման հարցերում աշակերտների մասնակցության, ուսուցիչ-աշակերտ փոխհամագործակցության ու էլի շատ ու շատ հարցերի մասին: Ասենք, որ այս անգամ ևս չգործեց «կանաչ», «կարմիր», «դեղին» քարտերի համակարգը: Այնուամենայնիվ, ես ու երևի թե նաև դահլիճի մեծամասնությունը դեռևս սպասումներ ունեին պլենումից, չէ՞ որ առջևում երրորդ՝ աշակերտների ու ջոկատավարների նախագիծն էր: Բայց, ավաղ, ի զարմանս պլենումի, նախաձեռնող խումբը հրաժարվեց ներկայացնել իր նախագիծը՝ պատճառաբանելով, որ այն անկատար է ու թերի: Զարմանալի է, մի՞թե չէր կարելի այս ամենը նախօրոք ճշտել:

Ինչևէ, պլենումը չավարտվեց, մտքերի փոխանակությունը շարունակվեց, ընդորում, եղան նաև դպրոցականների (Կ. Մելքոնյան, № 38 դպրոց, Ա. Նազոյան, № 74 դպրոց) ելույթներ, որոնք ավելի շատ ինքնապաշտպանության փորձեր էին, բայց նրանց դատելու, վիճաբանելու ունակություններն ու կարողությունները գրեթե նշանակություն չունեցան: Նշանակություն չունեցան, որովհետև բոլորովին էլ ոչ ավանդական եղանակներով մըտածված պլենումը ամենաավանդական ավարտ ունեցավ՝ հանձնարարել ՀԼԿԵՄ Լենինյան շրջկոմի բյուրոյին մշակել շրջանային պիոներական կազմակերպության հետագա գործունեության ծրագիր:

Չեմ կարող թաքցնել մտավախությունս. արդյոք հարցերի լուծման այսպիսի ճանապարհը դարձյալ հին տաշտակի առաջ չի՞ կանգնեցնի: Չէ՞ որ որքան էլ կատարյալ լինի տաճարի մտապատկերը, այն ի վերուստ դատապարտված է կործանման, եթե շինարարությունը գմբեթից սկսես:

Հ. Գ.— Վերոհիշյալ պլենումից բավական ժամանակ է անցել, բայց շրջանի պիոներական կազմակերպության կյանքում այդպես էլ էական փոփոխություններ չեն կատարվել: Իհարկե, միամտություն կլիներ կարծել, թե մեկ-երկու պլենումով արմատական շրջադարձ կապահովվի, բայց անժխտելի է, որ շրջանի և ընդհանրապես մայրաքաղաքի պիոներական կազմակերպությունը, որոնումների իսկական ժամանակ է ապրում: Եվ եկեք փորձենք այնպես անել, որ այն դարձյալ չդառնա «խելոք այրերի» կողմից մանուկների վզին փաթաթած կազմակերպություն:

ԼԻԼԻԹ ԳԱԼՍՏՅԱՆ




Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Այս պատմության գործող անձինք արդեն մեռել են, իսկ վկաները հանդիսավոր երդվեցին լռել: Ես նույնպես ձեռք բարձրացրի երդվելիս և իմ 9—10 տարեկանի ողջ լրջությամբ ու ռոմանտիկայով ընկալեցի այդ արարողության նշանակությունը: Չգիտեմ՝ մյուսները ուշադրություն դարձրի՞ն իմ տված խոստումին, չգիտեմ՝ պահեցի՞ն արդյոք իրենց խոսքը: Ինչևէ՝ ահա այդ պատմությունը՝ ժամանակի անխուսափելի աղավաղումներով և լավ կամ վատ գրական մշակմամբ:

Եղավ, որ մի անգամ իմ հորեղբորորդի Լաֆինուրը ինձ խնջույքի տարավ մի առանձնատուն: Ես հստակ չեմ հիշում նրա դիրքը. պատկերացնենք հյուսիսային խաղաղ, գետակի վրա իջնող ստվերաշատ գյուղերից մեկը՝ հարթ բնապատկերով, երկայնանկի ձգվող ավաններին ամենևին չնմանվող: Ուղևորությունը երկար տևեց, և ես գնացքում բավական ձանձրացա, բայց հայտնի է նաև, որ մանուկ հասակում ժամանակը շատ դանդաղ է ընթանում: Երբ հասանք տան դարպասներին, մթնում էր: Այստեղ ամեն ինչ վաղնջական ու պարզ թվաց ինձ՝ մսի հոտը, ծառերը, շները, չոր ճյուղերը և մարդկանց մերձեցնող կրակը:

Հավաքվածները մեկ դյուժինից ավելի չէին, բոլորն էլ ավագներ: Իմիջիայլոց ես հետո պարզեցի, որ ամենաավագի երեսունն էլ չէր լրացել: Շուտով հասկացա, որ նրանք բոլորն էլ շատ բան գիտեն ինձ համար մինչև այժմ էլ անհասանելի առարկաներից՝ վարգաձիեր, մոդայիկ դերձակներ, կառքեր, թանկ արժեցող կանայք: Իմ երկչոտությունը ոչ ոքի չէր խըռովում, ոչ ոք չէր զբաղվում ինձնով: Համտորեն խորոված ոչխարը չհասցրեց սառել երկար ճաշասենյակում: Վիճում էին գինիների պահման ժամկետներից: Տանը կիթառ էլ ճարվեց: Հիշում եմ՝ հորեղբորորդիս երգեց «Հին խրճիթը», Էլիաս Ռեգուլեսոյի «Գաուչոն» և մի քանի քառատող Խունինի փողոցի տանը տեղի ունեցած դանակներով մենամարտի մասին: Մատուցեցին սուրճ և տեղական սիգարներ: Տուն դառնալու մասին խոսք էլ չկար: Արդեն շատ ուշ էր, և ես վախ ըզգացի: Ժամացույցին նայել չէի ուզում: Առանց հաճույքի մեկ-երկու կում գինի խըմեցի, որպեսզի ավագների միջավայրում թաքցնեմ տղայի իմ մենակությունը: Ուրիարտեն Դունկանին դրդում էր պոկեր խաղալ երկուսով: Մեկն ասաց, որ այդպես ձանձրալի է, և առաջարկեց չորսով խաղալ: Դունկանը կողմ էր, բայց Ուրիարտեն անբացատրելի համառությամբ չէր ուզում լսել և իրենն էր պնդում: Հընարանքներով և միստիֆիկացիաներով ժամանակը լցնող անպարարություններից ու փասյանսի հասարակ լաբիրինթոսներից բացի, թղթախաղն ինձ ոչնչով չի գըրավել: Եվ ես աննկատ դուրս ելա: Անծանոթ ու մութ տունը (լույս էր վառվում միայն ճաշասենյակում) տղայի համար ավելին էր, քան թափառականի համար օտար երկրները: Քայլ առ քայլ ես ուսումնասիրում էի սենյակները: Հիշում եմ բիլյարդանոցը, շեղանկյուն ու քառակուսի ապակիներով վերնասրահը, ճոճաթոռները և մեծ պատուհանը, որտեղից երևում էր տաղավարը: Մթան մեջ բոլորովին մոլորվեցի: Տան տերը, որի անունը աղոտել են տարիները՝ ոչ այն է Ասեվեդո, ոչ այն է Ասեբալ, ի վերջո գըտավ ինձ: Եվ որ հաճելի բան անի. կամ խաղաղեցնի կոլեկցիոների իր փառասիրությունը, տարավ ինձ ապակեպատ պահարանի մոտ: Երբ լամպը վառվեց, ես սառը զենքերի մի հավաքածու տեսա: Դանակներ ու դաշույններ էին, որոնցից յուրաքանչյուրը յուրահատուկ մի բան ուներ: Նա ասաց, որ Պերգամինոյից ոչ հեռու ինքը հողեր ունի և գավառ գնալ գալիս է հավաքել այդ իրերը: Բացելով դուռը, նա հար և նման պատմություններ պատմեց, որոնք տարբերվում էին միայն տեղանունով ու ժամանակով: Ես հարցրեցի՝ արդյոք հավաքածուում չը-

կա այդ տարիներին գաուչոների իդեալ Մոռեյրայի դաշույնը: Նա ասաց, որ չկա, բայց «ս» տառի ձև ունեցող պոչով նըմա մի բան կարող է ցույց տալ: Բարձր ձայները ընդհատեցին նրան: Նա իսկույն փակեց պահարանը, ես գնացի նրա ետևից:

Ուրիարտեն գոռում էր, թե խաղընկերը խարդախում է: Մյուսները շրջապատել էին նրանց: Հիշում եմ՝ Դունկանը բոլորից բարձրահասակ էր, պինդ, քիչ կռացած, զուսպ, շատ բաց՝ գրեթե սպիտակ մազերով: Մանեկո Ուրիարտեն արագաշարժ էր, թուխ, մի քիչ հնդկացու նման, բացառիկ խնամված բեղիկներով: Ինչպես երևում էր՝ բոլորը հարբած էին: Չգիտեմ՝ հատակին իսկապես երկու-երեք շշեր էին ընկած, թե հիմա ինձ շեղում է մանուկ հասակում կինեմատոգրաֆիայով տարված լինելս: Ուրիարտեի լուտանքը չէր դադարում, ընդհակառակը՝ դառնում էր ավելի լկտի ու վիրավորական: Դունկանը չլսելու էր տալիս: Վերջապես, կարծես չուզենալով, բարձրացավ և միանգամից խփեց: Ուրիարտեն փռվեց հատակին և ճչաց, թե չի տանի խայտառակությունը, թե վիրավորողին մենամարտի է հրավիրում:

Դունկանը հրաժարվեց և կարծես արդարանալով ավելացրեց.

— Գիտե՞ք ինչ, ես ձեզանից վախենում եմ:

Բոլորը հռհռացին: Ուրարտիեն ոտքի ելավ ու ասաց.

— Ես ձեզ հետ կմենամարտեմ թեկուզ հենց այս րոպեին:

Ինչ-որ մեկը, թող Աստված նրան ների, ասաց, որ տանը զենք կա:

Չգիտեմ՝ ով բացեց պահարանը: Ուրիարտեն ընտրեց ամենաերկար ու ամենագեղեցիկ դաշույնը, որը «ս»-աձև դաստապան ուներ: Դունկանը գրեթե բախտաբերի վերցրեց մի դանակ՝ փայտե կոթով ու ծաղի ուրվապատկերով: Ինչ-որ մեկը ասաց, որ Մանեկոյի ընտրությունը քնորոշ է իր բնավորությանը: Եվ ոչ ոք չզարմացավ, երբ դաշույնը վերցնելիս նրա ձեռքը դողաց: Բայց բոլորը զարմացան, երբ Դունկանի ձեռքի հետ էլ նույնը կատարվեց:

Հաշիվ մաքրելու պատրաստ տղամարդիկ ծեծկռտուքով չեն վիրավորում տունը և ըստ ավանդույթի ելնում են դուրս: Ոչ այն է զվարճանալով, ոչ այն է լրջորեն մենք բոլորս նետվեցինք մառախլապատ գիշերվա մեջ: Ես էլ էի հարբել, բայց ոչ գինուց, այլ արկածախնդրությունից՝ ուզում էի, որ մեկնումեկը մյուսին սպանի, իսկ հետո բոլորին պատմեմ այդ մասին և վերհիշեմ: Թերևս այդ պահին մյուսներն ամենևին ինձնից տարիքով չէին: Ես ամենքի հետ զգացի, թե ինչպես մեզ բռնել ու տանում է փոթորիկը, որին հաղթել ոչ ոք չի կարող: Մանեկոյի մեղադրանքին այնքան էլ չէին հավատում, և համարում էին այն գինուց տաքացած հին թշնամանքի արդյունք: Մենք անցանք ծառերի միջով, շրջանցեցինք տաղավարը: Դունկանը և Ուրիարտեն գնում էին առջևից: Ինձ զարմացնում էր, որ նրանք, կարծես վախենալով անսպասելի հարձակումից, աչքերը չէին կտրում միմյանցից: Խոտածածկ, փոքրիկ բացատում Դունկանը մեղմ ու տիրաբար ասաց.

— Այստեղ հարմար է:

Երկուսը կանգնած էին կենտրոնում՝ չհամարձակվելով սկսել:

Մեկը գոռաց.

— Ծպրտեք այդ երկաթի կտորները, դրանք խանգարում են, կռվեք բռունցքներով:

Բայց նրանք արդեն մենամարտում էին: Սկզբում երկուսն էլ անվճռական էին, կարծես վախենում էին վիրավորվելուց: Սկզբում նայում էին զենքին, իսկ հետո՝ միայն հակառակորդի աչքերի մեջ: Ուրիարտեն մոռացել էր իր կատաղությունը, Դունկանը իր անտարբերությունը կամ արհամարհանքը: Վտանգը փոխել էր նրանց, հիմա նրանք մինչ ի մահ զարկվող երկու տղամարդ էին, ոչ թե երկու պատանի: Ես մետաղի քաոսային փայլ էի ակնկալում, բայց իրականում կարող էի հետևել իսկական մենամարտի՝ շախմատային խաղի բոլոր կանոններով: Համոզված եմ, որ տարիները ոչ ավելի վառ, ոչ ավելի աղոտ են դարձրել այն, ինչ վիճակվեց ինձ տեսնել: Չգիտեմ, թե որքան տևեց այդ՝ որոշ դեպքեր չեն ենթարկվում ժամանակի մեր չափումներին:

Առանց արմունկակալի, որով պետք է փաթաթել ձախ ձեռքը, նրանք կասեցնում էին հարվածները: Երկուսի ծվատված ձախ թևքերն էլ իսկույն արյունոտվեցին: Ես մտածեցի, որ մենք խաբվել ենք՝ կարծելով, թե սրամարտի այդ հնարքը անծանոթ է նրանց: Բայց և իսկույն նկատեցի, որ նրանք մարտը տարբեր կերպ են վարում: Զենքերն էին տարբեր: Դունկանը փորձում էր մոտենալ հակառակոր-



դին: Ուրիարտեն նահանջում էր՝ ցածրից հեռահար հարվածներ հասցնելով: Նույն ձայնը, որ հիշեցրեց զենքով լի պահարանի մասին, բղավեց.

— Նրանք սպանում են միմյանց, մի թողեք կռվեն:

Ոչ ոք չհամարձակվեց բաժանել: Ուրիարտեն հանկարծ կռացավ, Դունկանը վրա քշեց: Երկու մարմինները գրեթե հպվեցին: Ուրիարտեի սայրն ուղղված էր Դունկանի սրտին: Եվ մեր աչքերի առաջ երկար դաշույնը կարճացավ, քանի որ կուրծքն էր մխրճվել: Դունկանը փռվեց խոտերին: Եվ ասաց շատ կամաց.

— Տարօրինակ է: Կարծես երազում լինի:

Նրա աչքերը բաց մնացին, նա այլևս չշարժվեց: Ես տեսա, թե ինչպես մարդը մարդ սպանեց:

Մանեկո Ուրիարտեն խոնարհվեց մեռածի վրա և նրանից թողություն խնդրեց: Նա հեծկլտում էր առանց քաշվելու: Իր

արարքը ճնցել էր նրան: Հիմա ինձ հայտնի է, որ չարագործություն կատարելիս ավելի քիչ են զղջում, քան անուղղելի սխալվելիս:

Այլևս չէի ուզում նալել: Ինչ ցանկացել էի, կատարվել ու շշմեցրել էր ինձ: Լաֆինուրն ինձ հետո ասաց, որ դաշույնը մի կերպ են դուրս քաշել մեռածի մարմնից: Քիչ անց կայացավ մեր գաղտնի համաձայնությունը: Որոշեցին լռել միայն ամենակարևորի մասին և դանակներով մենամարտը ներկայացնել որպես սուսերամարտ: Չորս հոգի հանձն առան մարտավկաների դերը, նրանց թվում նաև Ասեբալը: Մենք հույս ունեինք, որ Բուենոս Այրեսում ամեն ինչ կհարթվի, չէ՞ որ միշտ ինչ-որ մեկը ինչ-որ մեկի բարեկամըն է: Կարմրափայտ սեղանին շաղված էին խաղաքարտերն ու թղթադրամները, և ոչ ոք չէր ուզում տեսնել կամ ձեռք տալ դրանց:

Հետագայում ես շատ անգամ եմ ցանկացել այս պատմությունը վստահել ընկերոջս, բայց միշտ մտածել եմ, որ գաղտնիքի տեր լինելն ավելի հաճելի է, քան այն մատնելը: Երեսուն տարի անց պատահական զրույցը հանկարծ ստիպեց խախտել հին խոստումը: Ծոշակի անցած ոստիկանական տեսուչ Խոսե Օլավեն պատմեց ներքին Ռետիրոյի դանակակռիվների մասին և ասաց, որ այդ ժողովուրդը ընդունակ է ցանկացած նենգության միայն թե վերացնի հակառակորդին, և որ մինչև Պոդեստա ու Գուդերեաս եղբայրները գրեթե չեն եղել խառնաձեռնությունների մենամարտեր: Ես հայտնեցի, որ ինքս տեսել եմ նման մենամարտ և պատմեցի այս դեպքը: Նա լսեց ինձ մասնագիտական հետաքրքրասիրությամբ և ասաց.

— Դուք համոզվա՞ծ եք, որ Ուրիարտեն և այդ մյուսը նախկինում երբեք չեն կռվել դանակներով: Գուցե նրանք սովորել են այդ ինչ-որ տեղ, գյուղական վայրերում:

— Ոչ,— ասացի ես,— բոլոր նրանք, ովքեր այնտեղ էին այդ գիշեր, հրաշալի գիտեին միմյանց և բոլորն էլ զարմացել էին:

Օլավեն խոսեց դանդաղ, կարծես բարձրաձայն մտածելով.

— Դաշույններից մեկը «У»-աձև դաստապան է ունեցել: Այդպիսի դաշույններ, որոնք տխրահռչակորեն հայտնի են, երկուսն են եղել միայն: Մեկը պատկանել է Մոյերային, մյուսը՝ Խուան Ալմադային:

Իմ հիշողությունը կենդանացավ, Օլավեն շարունակեց.

— Դուք հիշատակեցիք փայտե դաստապանով և փոքրիկ ծառի ուրվագծով դանակը նաև: Այդպիսիք հազարներ են, բայց եղել է մեկը...

Նա մի վայրկյան լռեց և նորից շարունակեց:

— Սենյոր Ասեվեդոյի դաստակերտը մոտ է Պերգամինոյին: Հենց այդ վայրերում է անցյալ դարի վերջերին թափառել մի այլ մարդասպան՝ Խուան Ալմանսան: Տասնչորս տարեկանում կատարած առաջին մարդասպանությունից հետո նա չի բաժանվել այդ այդպիսի մի կարճ դանակից, որը հաջողություն էր բերել նրան: Խուան Ալմանսան և Խուան Ալմադան ատում էին միմյանց, քանի որ մարդիկ շփոթում էին նրանց: Երկար ժամանակ նրանք հանդիպում են փնտրել, բայց այդպես էլ չեն հանդիպել: Խուան Ալմանսային պատահական գնդակն է սպանել ինչ-որ ընտրությունների ժամանակ, մյուսը, թվում է, մեռել է բնական մահով Լաս Ֆլորեսնի հիվանդանոցում:

Այդ երեկո ուրիշ ոչնչի մասին խոսք չեղավ: Մենք մտորում էինք:

Ինը կամ տասը մարդ, որոնք արդեն չըկան, տեսան այն, ինչ տեսան իմ աչքերը՝ դաշույնը մինչև դաստապանը մարմնի մեջ, և մարմինը երկնքի տակ, բայց իրականում մենք տեսել էինք վերջը, մի այլ, ավելի հին պատմության: Մանեկո Ուրարտեն չսպանեց Դունկանին: Ոչ թե մարդիկ, այլ զենքերն էին մենամարտում: Մահվան զենքերը կողք-կողքի ննջել էին ապակեպատ պահարանում, քանի դեռ ձեռքերը նրանց չէին արթնացրել: Դանակը և դաշույնը երևի ցնցվել էին արթնանալիս: Այդ պատճառով դողաց Ուրիարտեի ձեռքը, այդ պատճառով դողաց Դունկանի ձեռքը: Զենքը կովել գիտեր մարդկանց հակառակ: Եվ ճարպկորեն կովեց այդ գիշեր: Դանակն ու դաշույնը շատ էին փնտրել միմյանց գավառի երկար ճանապարհներին և վերջիվերջո հանդիպել էին, երբ նրանց տերերն արդեն հող էին դարձել: Սայրերին քնել էր, բայց ոչ մեռյալ քնով, մարդկային ոխը:

Իրերը մարդկանցից երկար են ապրում: Ով գիտե, ավարտվե՞լ է արդյոք այս պատմությունը: Ով գիտե, չի՞ լինի արդյոք նոր հանդիպում:

Թարգմանեց Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆԸ

ԱՇՈՏ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# Ըստ Խնկո Ապոր

Ըհե՜յ, կանչեց պստիկ մուկը,
Էհե՜յ, կանչեց ճստիկ մուկը,
հավաքվեցեք, ականջ արեք,
պատմեմ, թե ինչ տեսա երեկ:
Երբ որ մութը վրա տվեց,
երբ որ մարդը թակարդ դրեց,
կատվից թաքուն ճկուղ մտա
ու երբ հարմար բան չգտա,
դես նայեցի, դեն նայեցի,
փորս դատարկ դուրս գնացի...
Եվ ի՞նչ տեսնեմ, էն չար կատուն
մեծ առնետից փախչում էր տուն:
Հիմա լսեք ինչ եմ ասում,
կատվադողը մեզ չի սազում,
Խնկո Ապոր ժողովից էլ
կարգին մի բան դուրս գար գուցե,
թե որ մեկը սուտ չկաղար,
մեկ ուրիշը զուր չճառեր...
վերջը, զանգը օդում թողել,
կատվի ձեռից դարձանք գողեր:
Գնալ է պետք առնետի մոտ
ու նրա հետ լեզու գտնել,
ու համառել,
իբր նույնն ենք ու նույն ցեղից,
որ ինքը մեզ հանի ցեխից.
կրակն ընկանք, որ մի անգամ
սարսափահար կատվից փախանք:
Այս համբավը մեզ չի սազում,
ելեք գնանք, ձեզ եմ ասում:
Ու մկները հավաքվեցին,
հետևելով իրենց մեծին,
կաղ ու տկար ու ճառասան,
մեծ առնետի դուռը հասան:
Շատ խոսեցին, քիչ խոսեցին,
բայց առնետին համոզեցին,
իբր նույնն են ու նույն ցեղից,
որ նա իրենց հանի ցեխից,
որ տեր կանգնի Մկստանին
ու սրտներից վախը հանի,
և ասացին՝ պատվի հարց է,
իբր՝ չկան ուրիշ հարցեր—
և խայտառակ համբավն իրենց
առնետին էլ վիրավորեց,
ասաց՝ հերիք կատվից վախեք,
էլ չլսեմ,
թե սարսափած տուն եք փախել,
վաղը էնպես հախիցը գամ,
որ ձեզ երբեք էլ մոտ չգա,
դուք էլ՝ վկա:



Ու մկները գոհ իրենցից
շտապելով տուն գնացին:
Բայց երբ անցավ մի քանի օր,
ճստիկ մուկը նշանավոր
իրար գլխի հավաքելով
Մկստանը հռչակավոր,
ժողով սարքեց օր ցերեկով,
թե ո՞վ է այն մուկը անվախ,
որից՝ եթե կատուն փախավ,
ուրեմն փառք առնետներին,
իրենց գործը գլուխ բերին:

Բայց այ քեզ բան...
Երբ որ բանը հասավ գործին,
մկներն անցան լացուկոծին...
Ախր մուկը տեղից թույլ է,
ախր կատվին ինչպե՞ս նայի.
ու կրկնվեց պատմությունը
ըստ Աթաբեկ Խնկոյանի:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Չգիտեմ ինչու

Չգիտեմ ինչու համեմատում եմ մորս
Հայ մեծ բանաստեղծ Շիրազի հետ,
Չգիտեմ ինչո՞ւ կարծում եմ,
Թե իմ առջև կանգնած է անհա
Մի մեծ լեռ, մի հսկա ժայռ:
Բայց երբ բացում եմ աչքերս,
Տեսնում եմ, որ իմ մայրիկն է՝
Ճերմակ ու նիհարած:
Եվ երբ փակում եմ նորից աչքերս,
Տեսնում եմ երկնքում ճերմակ աղավնի,
Ճախրելով օդում,
Գալիս նստում է մի ծառի ճյուղի,
Հետո աղավնին ճերմակ ու ջահել
Ջրերի վրա ցոլում է անհա...
Բայց երբ բացում եմ աչքերս,
Տեսնում եմ, որ իմ մայրիկն է հոգնած:

ԼԻԼԻԹ ԱՐԱՄՅԱՆ
Մ. Շահինյանի անվ. № 170 միջն. դպրոցի
7-րդ բ դաս.

## Իմ բարի տատիկի հիշատակին

Ինչո՞ւ զոհվեցիր, իմ բարի տատիկ
Այդ երկրաշարժը
Քեզ տարավ իր հետ,
Իմ բարի տատիկ:
Բայց նա չգիտե՞ր,
Որ դու իմ բարի,
Բարի տատն էիր:
Աշխարհում չկար քեզ նման բարի,
Քեզ նման բարի ու անուշ տատիկ:
Չէ՞ որ մեզ համար մեծ պատվար էիր,
Բայց հիմա ո՞ւր ես,
Իմ բարի տատիկ:
Ետ վերադարձիր,
Մենք շատ ենք տխրում, որ հիմա չկաս:
Ես շատ եմ խնդրում, ետ վերադարձիր,
Իմ բարի տատիկ:
Բայց ես ինչքան էլ,
Ինչքան էլ գոռամ,
Մեկ է, տատիկս էլ ինձ չի լսի:
Բայց ես կպահեմ,
Կպահեմ տատիս հիշատակը լույս
Իմ սովորելով, իմ սովորելով:

ՄԱՐԻՍ ԽԶՄԱԼՅԱՆ
Կիրովականի № 12 միջն. դպրոցի 5-րդ դաս.

## Մեր բակի շնիկը

Մեր բակում կա մի շնիկ,
Չալպտուրիկ ու բրդոտ,
Որ սիրում է ամենքին
Եվ միշտ գալիս է մեզ մոտ:

Եվ զրկում ենք մենք նրան,
Եվ գուրգուրում, փայփայում:
Իսկ նա ժպտում է միայն,
Եվ աչքերն են խոր փայլում:

Եվ հաչում է նա մեկ-մեկ,
Երբ չար աչքեր է տեսնում,
Նա դարձել է մեզ ընկեր
Եվ պահապան մեզ անքուն:

## Իմ մայրիկին

Լույս ու հույս ես,
Իմ հեզ մայրիկ,
Ուժ եմ առնում
Ես քեզանից:

Քեզնով արբում,
Քեզնով հրճվում,
Քեզ նմանվել
Եմ ցանկանում:

## Գարնան գալը

Շուտով կհնչեն զանգերը գարնան,
Եվ գետակները կերգեն կրկին,
Կկորչեն ցուրտն ու գիշերը ձմռան,
Կարթնանա քնից ոսկեփայլ արփին:

Եվ ծաղիկները շուտով կելնեն
Հողի ջերմացող լեցուն ընդերքից,
Ծառերը կրկին կանաչ կհագնեն,
Եվ կդայլայլեն թռչունները գիլ:

Շուտով կհնչեն զանգերը գարնան:
Եվ ողջ աշխարհը նորից կխնդա:

## Աշուն

Նորից աշուն է,
Եվ տերևները
Դարձել են նախշուն:
Եվ բարիքներ են
Ծովացել անուշ:
Աշուն է, աշուն,
Եվ մերկ ծառերը
Ձմեռնամուտ են
Գլխիկոր հուշում:

## Իմ տատիկը

Ես մի տատիկ ունեմ բարի,
Որ սիրում է ինձ անսահման,
Ամեն գիշեր իմ սնարին
Նա երգում է ախորժաձայն:

Եվ հսկում է նա ինձ արթուն,
Երբ հիվանդ եմ հաճախ լինում,
Եվ կարոտով փարվում է ինձ,
Տուն եմ գալիս երբ դպրոցից:

Իմ տատիկը քաղցր ու բարի,
Ամենալավ տատն աշխարհի:

ՔՐԻՍՏԻՆԵ ԳԵՎՈՐԳՅԱՆ
Երևան, 56-րդ դպրոց, 6-րդ դաս.



«ՄԵՐ ԸՆՏԱՆԻՔԸ» ՄԵՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ, 10 տ. Երևան, Լենինյան շրջանի պիոներպալատ



ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՔԱՌԱՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ

# Մեծ Հայքի վերամիավորման վերջին ճիգերը

Հայաստանի արևելյան մասում Խոսրովը սկսում է քայլեր անել Մեծ Հայքը վերամիավորելու և հայոց անկախությունը վերականգնելու ուղղությամբ: Նրա մեջ, երևի, արթնացել էր հայ Արտաշեսյան ու Արշակունի լավագույն թագավորների ոգին:

Խոսրով III-ը նախ աշխատում է իր կողմը գրավել Հայաստանի արևմտյան մասում մնացած բոլոր նախարարներին, ապա ջանում է լավ հարաբերություններ ստեղծել նաև Հռոմի կայսրի հետ՝ նրանից խնդրելով վստահություն, որ ինքը թագավորի նաև Մեծ Հայքի արևմտյան հողերի վրա: Երկու դեպքում էլ Խոսրովը հաջողում է: Նա, թեև կախյալ վիճակում, բայց դառնում է Մեծ Հայքի ընդհանուր թագավոր (չհաշված անջատված ծայրամասային գավառները):

Ապա՝ Խոսրովը հայոց կաթողիկոս է նշանակում Հայաստանի միասնության և անկախության զորավիգ Սահակ Պարթևին՝ Ներսես Մեծի որդուն: Ներսեսից հետո հայոց երեք կաթողիկոսները՝ Շահակ, Զավեն, Ասպուրակես Մանազկերտցիները, Գրիգոր Լուսավորչի տոհմից չէին: Սրանցից վերջինը՝ Ասպուրակեսը վախճանվեց Մեծ Հայքի բաժանման տարին, և նրան փոխարինեց Սահակը, որ այդ ժամանակ 39 տարեկան էր: Խոսրով թագավորը Սահակին կաթողիկոս նշանակեց առանց Շապուհի հետ խորհրդակցելու: Իմանալով Սահակ Պարթևի հայացքները, Խոսրովը նրան կաթողիկոս դարձրեց հայոց պետականությունը ամրապնդելու նպատակով. Պարսկաստանը կարող էր և չհամաձայնել այդ ընտրությանը: Ինչևիցե, պարսից արքունիքին չէր կարող դուր գալ Խոսրովի նաև այդ արարքը:

Խոսրով III-ը սկսում է երկրի իշխանությունը ավելի կենտրոնացնել իր ձեռքում: Ու թեև հայոց թագավորն իր հպատակությունն էր հայտնում թե՛ Պարսկաստանին, թե՛ Հռոմին ու երկուսին էլ բարեխղճորեն հարկ էր վճարում, բայց Պարսկաստանում չէին կարող չտեսնել, որ Խոսրովը Հայքը տանում է դեպի անկախություն և լիակատար միավորում: Իսկ հայ անհանգիստ նախարարներն այս անգամ էլ սկսեցին Խոսրով III Արշակունուց դժգոհել: Նրանց այդ դժգոհությունը հրահրում էին նաև Պարսկաստանի ու Հռոմի տիրակալները: Դեռ ավելի առաջ Պարսկաստանի թագավորը հայ նախարարներին խոստանում էր վերացնել նրանց վրա դրված հարկերը, եթե նրանք Արշակունիների թագավորությունը ասպարեզից հանեն: Նման խոստումներ գալիս էին նաև Կոստանդնուպոլսից: Նախարարների առավել եսամոլ մասը գերադասում էր հարկերից ազատվել, իր աշխարհում լինել ինքնիշխան՝ թեկուզ հայոց կենտրոնական պետականությունը վերանար: Ահա նրանք կրկին գնում են Պարսկաստան, գանգատվում Խոսրովից: Պարսից արքային էլ դա էր պետք: Նա պատգամավոր է ուղարկում Հայք՝ իր դժգոհությունը հայտնելով Խոսրովի անկախ քաղաքականության պատճառով: Հայոց թագավորը պատգամավորներին կոպտում ու ճանապարհ է դնում: Այստեղ նա, իհարկե, սխալ է գործում. նա իր դիրքերը դեռ լավ չէր ամրապնդել, պետք էր ավելի զգույշ լինել: Բայց Արշակունին մնում էր Արշակունի: Հիշենք Փավստոսի պատմածն այն մասին, թե ինչպես էր Արշակը համարձակ, անկախ դառնում, Շապուհին հայհոյում, երբ կանգնում էր հայոց հողի վրա:

Խոսրով III-ը օգնություն է խնդրում

Կոստանդնուպոլսից։ Բայց անօգուտ։ Թեոդոս կայսրը չի ուզում հարաբերությունները փչացնել Պարսկաստանի հետ։ Շապուհ III-ը զորք է ուղարկում Հայաստան։ Խոսրովին և նրա մտերիմ Գազավոն Կամսարականին ձերբակալում են։ Պարսից զորքի մի մասը մնում է Հայաստանում, մյուս մասը գերիներին առած շարժվում է դեպի Պարսկաստան։ Ճանապարհին պարսից շարասյան վրա հարձակվում է հայերի զորքը՝ Շավարշ Կամսարականի (Գազավոնի եղբոր) և Պարգև Ամատունու գլխավորությամբ։ Արյունալի ճակատամարտ է տեղի ունենում։ Հայերը չեն կարողանում թագավորին փրկել, քանի որ նա շղթայված էր։ Երկու կողմից էլ շատ զոհեր են լինում։ Շավարշը և Պարգևի որդի Մանվել Ամատունին սպանվում են, իսկ Պարգևին բռնելով՝ նրանից տիկ են հանում, փչում, որ Անհուշ բերդում կախեն Խոսրով թագավորի առաջ։ Դա 388 թվականն էր։


Վռամշապուհ

Շապուհը հայոց նոր թագավոր է կարգում Խոսրով III-ի եղբորը՝ Վռամշապուհին, որը Հայքում թագավորեց 388-ից մինչև 414 թվականը։

Վռամշապուհը շարունակեց համարվել Մեծ Հայքի թագավոր և հարկ էր տալիս թե՛ Հռոմին, թե՛ Պարսկաստանին։ Նրա թագավորության 26 տարիները խաղաղ էին։ Նա իմաստուն, գիտուն և հայրենասեր թագավոր էր։ Լավ հարաբերություններ էր պահպանում հայ եկեղեցու և նրա կաթողիկոս Սահակ Պարթևի հետ։ Կարողանում էր նաև համակերպվել հայ նախարարների հետ։ Աշխատում էր իր դեմ չգրգռել Պարսկաստանի թագավորին և Բյուզանդիայի (Հռոմի) կայսրին։ Իր հնազանդությունն էր հայտնում նրանց։

Երբ Պարսկաստանում Խոսրով III-ին գահընկեց արեցին, կարգազրկվեց նաև Սահակ Պարթևը։ Հետո նա գնաց Տիզբոն և իր կաթողիկոսական կարգը վերականգնեց ու իբրև հայոց կաթողիկոս


Պարսից Արտաշիր արքան գահընկեց է անում Հայոց Խոսրով թագավորին

ճանաչվեց Վռամշապուհի կողմից:

Չնայած այս ամենին, զգացվում էր, որ Արշակունիների թագավորությունը երերում է, նրա վախճանը հեռու չէր:

Վռամշապուհ թագավորի օրոք կատարված ամենամեծ գործը հայ գրերի գյուտն էր, հայոց դպրոցի հիմնադրումը և հայ գրականության սկզբնավորումը: Այդ ամենը կատարեց Մեսրոպ Մաշտոցը, և նրան մեծապես օգնեցին Սահակ կաթողիկոսն ու Վռամշապուհ թագավորը:

Իսկ մինչ այդ, 395 թ. վախճանվեց Հռոմի Թեոդոս կայսրը, որ Մեծ էր կոչվել հատկապես վեստ-գոթերի դեմ իր տարած հաղթանակի համար: Հռոմեական կայսրության մայրաքաղաքը Կոստանդնուպոլիս տեղափոխվելուց հետո կայսրությունը փաստորեն երկու մասի էր բաժանվել՝ Թեոդոսի մահից հետո պաշտոնապես վավերացվեց այդ բաժանումը: Թեոդոսը երկու որդի ուներ՝ Արկադիոսը և Հոնորիոսը: Թեոդոսի մահից հետո կայսրության արևելյան մեծագույն մասը Կոստանդնուպոլիս մայրաքաղաքով բաժին ընկավ Արկադիոսին և սկսեց կոչվել Արևելյան Հռոմեական կայսրություն կամ Բյուզանդիա, արևմտյան մասը՝ Հռոմ մայրաքաղաքով, մնաց Հոնորիոսին և սկսեց կոչվել Արևմտյան Հռոմեական կայսրություն:

Հասկանալի է, որ Հայաստանի հետ անմիջական առնչվողը Բյուզանդիան էր:

408 թ. Բյուզանդիայի կայսր դարձավ Թեոդոս II-ը, որը թեև հայոց Վռամշապուհ թագավորի հետ արտաքուստ լավ հարաբերություններ էր պահպանում, բայց Մեծ Հայքի բյուզանդական մասը վերցրեց նրա իշխանությունից և համարեց Բյուզանդիայի գավառ, որը հայկական այլ հողերի հետ ենթարկվում էր բյուզանդացի դուքսին, իսկ սա իր հերթին՝ Անտիոք քաղաքում նստող բյուզանդացի մագիստրոսին: Շուտով Կարինը դարձավ Բյուզանդիայի իշխանության տակ գտնվող հայկական հողերի կենտրոն և Բյուզանդական կայսր Թեոդոս II-ի պատվին վերանվանվեց Թեոդոսուպոլիս:

Այսպիսով, 408 թվականից հայոց թագավորը առնչություն չուներ Կարինից դեպի արևմուտք գտնվող հայկական տարածքների հետ, մնում էր որպես Մեծ Հայքի արևելյան մասի թագավոր՝ ենթակա Պարսկաստանին:

(շարունակելի)

ԱՐԱ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

# ԱՐՅՈՒՆՈՏ ԴՐՈՇ ՄԵՐ ԱԶԱՏՈՒ-ԹՅԱՆ

Հայոց դրոշներն ունեն իրենց սեփական, ազգային արմատները: Լինելով մարդկության քաղաքակրթության ռահվիրաներից, մշակված կրոնական հավատալիքների ու զարգացած արհեստագործության կրողները, հայերն առաջիններից մեկը պարզեցին դրոշ ու հորինեցին զինանշանը:

Մասնագետների կարծիքով՝ դրանք ստեղծվեցին հեթանոսության օրոք, արձանագործության զարգացման հետ միաժամանակ: Դրոշների նախնական տեսակները տոհմի պահապան կուռքի արձանիկներն էին՝ մետաղե կամ փայտե ձողի վրա պարզած: «Եվ այն օրերից,— գրում է Եզնիկ Կողբացին,— յուրաքանչյուր ոք իր արհեստով նույնպիսի բաներ էր կերտում (արձանիկներ—Ա. Թ.): Դարբինը՝ դարբնությամբ, արծաթագործըն ու պղնձագործը, քարտաշն ու բրուտըն էլ՝ յուրաքանչյուրն իր արհեստով»:

Հետագայում նախարարական-իշխանական ամեն տուն իր կուռքի պատկերով՝ դրոշմով (այստեղից էլ դրոշ) ոչ միայն զինանշան ուներ, այլև, ըստ Մովսես Խորենացու, դրա (կուռքի) անունով էլ կոչում էր իր տոհմը: Արծրունիները արծիվ ունիներ էին, անտառաքնակ Հավնունիները թագավորական բազեակիրներ էին, Գնունիները (գինի ունի) թագավորական ըմպելիքներն էին պատրաստում և այլն:

Պատերազմների, զորահավաքների, հանդիսությունների ժամանակ սրանցից յուրաքանչյուրը ներկայանում էր իր զինանշանով՝ պարզած ձողի, նիզակի վրա: Սկզբնական շրջանում դրանք արձանիկներ էին, ապա պաստառներ՝ զինանշանի դրոշմով:

Ինչպես նախարարական, այնպես էլ թագավորական զորքի մեջ կային հատուկ մարդիկ, որոնք կրում էին դրոշը կամ վառը (ոսկեզօծ, վառվռուն գույներից) և կոչվում էին դրոշակակիր կամ վառատար: Այդ կարգը պահպանվել է մինչև այսօր: Վառատարը համապատասխանում է ներկայիս բանակի «պրապորշչիկի» կոչմանը:

Համաձայն Վարդան Հացունու ուսումնասիրությունների՝ հին աշխարհի արքայական լաթե դրոշները միագույն էին՝ վարդագույն կամ ծիրանագույն, զինանշանի ոսկեթել ասեղնագործ դրոշմով: Ծիրանագույն էին նաև հայոց թագավորական դրոշները: Արտաշեսյանների ծիրանագույն դրոշի վրա զույգ արծվի և արևի ոսկեկար նշանն էր, Արշակունիների դրոշի վրա՝ շիկակարմիր խորան (արև), խորանի վրա՝ արծվի նշան: Բագրատունիների դրոշին պատկերված էր արծիվ: Առյուծ էր պատկերված կիլիկյան թագավորական ծիրանագույն դրոշների վրա:

Հետագա դարերում փոխվեցին դրոշների ձևերն ու գույները: 18—19-րդ դդ., երբ անկախության համար պայքարի դրական արդյունքները տեսանելի էին դառնում, անկախ Հայաստանի ստեղծման նախագծերի հետ միասին ներկայացվում էին Հայոց նոր դրոշների օրինակներ:

Դրանցից առաջինը 1773 թ. Մադրասում կազմած «Որոգայթ փառացում» ներկայացնում է Շահամիր Շահամիրյանը՝ կարմիր-կապույտ-դեղին գույներով: Հ. Ստեփանյանն այն համարում է հայկական առաջին եռանգավոր դրոշի նախագիծ: Մյուսը ներկայացնում էին Լազարյանն ու Արղությանը՝ 1779 թ. իրենց կազմած անկախ Հայաստանի նախագծում, որի Ժ (10-րդ) կետում ասվում է. «Սահմանեալ կաւալերն (նշան) լինել տապան Նոյի, և լենտն երեք գույն՝ կարմիր, կանաչ և կապույտ ըստ գունոյն աղեղան, որ զկնի ջրհեղեղին տուաւ Աստուած Նոյի ի նշան հաշտութեան»: Ըստ Անանիա Շիրակացու վկայության՝ հայերը ծիածանն անվանել են Աստծո գոտի կամ աստվածակամար: Ավանդության համաձայն՝ Նոյյան տապանը երբ նստեց Արարատի վրա, Աստված իր ծիրանի (կարմիր՝ ծիածանի արտաքին շերտի գույնը) կամարը կապեց երկնքում՝ որպես Նոյի ու նրա մարդկանց հետ իր



Բագրատունյաց տոհմի դրոշ, 10-րդ դար
Արտաշեսյան հարստության դրոշ, մ. թ. 1-ին դար
Մամիկոնյան տոհմի դրոշ, 4-ից 9-րդ դար
Կիլիկիա—Կիպրոս միացյալ թագավորության դրոշ, 14-րդ դար
Ղևոնդ Ալիշանի առաջարկած եռագույն դրոշի տարբերակ, 1855 թ.

հաշտության նշան, և ջուրը ետ քաշվեց: Ահա որպես հայկական գույներ ծիածանի այս երեք գույնն էին առաջարկում Լազարյանն ու Արղությանը: Հավանաբար Շահամիրյանի առաջարկած եռագույնն էլ ծիածանի հիմնական գույներն էին խորհրդանշում:

«Հայկական գույների» վերաբերյալ կա մի ուշագրավ հիշատակություն ևս. 1875 թ. ավստրիական կայսեր հրամանով կայսրության Ասպետի տիտղոս է շնորհվում հայազգի դիվանագետ Աստվածատուր Ջուղին: Հրովարտակում, ի թիվս այլևայլ մանրամասնությունների, նկարագրվում են նաև Ջուղի տոհմական զինանշանի գույները՝ «հայկական կարմիր-կապույտը»: Հետևաբար՝ այս գույները արդեն պաշտոնապես ճանաչվում էին որպես հայկական:

Կարմիր-կապույտի, որպես հայկական գույների բացատրությունը (բացի այն, որ կարմիրը (ծիրանին) եղել է հայոց թագավորական դրոշների ավանդական գույնը) թերևս կապված է Քրիստոսի պատկերի և ջրհեղեղի ու ծիածանի պատմության հետ:

Խորենացին վկայում է, որ Եդեսիայի (Ուռհայի) հայոց Աբգար թագավորն իր սուրհանդակ Անանին ուղարկում է Երուսաղեմ՝ Քրիստոսի մոտ, խնդրելու նրան, որ գա և բուժի իրեն, սակայն Փրկիչը պատասխան թղթում խոստանում է ուղարկել իր աշակերտներից մեկին: «Այս թուղթը,— գրում է պատմահայրը,— բերեց Աբգարի սուրհանդակ Անանը և նրա հետ փրկչի կենդանանգիր պատկերը, որը մինչև այսօր գտնվում է Եդեսիայում»: Ըստ «Դեյլի թելեգրաֆ» լրագրի խմբագրի անձնական ուսումնասիրության, որը 1969 թ. արտատպել է իրանահայ «Կանթեղ» օրացույցը, «Եդեսիոյ Աբգար հայ թագաւորի շնորհիվ Յիսուսի հարազատ դիմանկարը հասել է մեզ», պահվում է Ծենովայի ս. Բարթուղիմեոս հայոց եկեղեցում և «գոց-կարմիր» գույնի է:





Լազարյան-Արղության նախագծի ԺԲ (12-րդ) կետում, որպես Քրիստոսի կողմից մեզ (հայերիս) առաքված «առաջին նշան», հիշվում է այս «կարմիր լենտը», որտեղ կարմիր գույնը, տվյալ դեպքում, համարվում է հարության, հաղթանակի գույն:

Ինչպես վերը նշեցինք, ըստ ավանդության՝ Աստված Հայոց երկնակամարում, Արարատի վրա, կապույտ երկնքում է կապել իր հաշտության գոտին՝ ծիածանը, այստեղից էլ կապույտը (երկնագույնը) հայոց մեջ խորհրդանշում է հաշտություն-խաղաղությունը և նորից համարվում է հայկական գույն»:

Ավելի ուշ հայկական կուսակցությունների դրոշներն էլ այս գույներն ունեին, հնչակյան և դաշնակցական կուսակցություններինը՝ կարմիր, որը հեղափոխություն, պայքար, հաղթանակ էր խորհրդանշում, իսկ ռամկավարներինը՝ կապույտ, խաղաղության խորհրդանիշը:

Հիշատակություններ են պահպանվել նաև ոսկեգույն-ցորնագույնի վերաբերյալ: Ֆրանսահայ իշխան Գվիդոն Լուսինյանը, որն իրեն համարում էր Կիլիկյան արքայատան ժառանգորդ և ուսումնասիրություններ էր կատարել այդ մարզում, օգնականներ ունենալով ճանաչված մրտավորականներ Արշակունի Թեոդիկին, Զապել Եսայանին, Հրաչյա Աճառյանին, Երվանդ Օտյանին և այլոց, հիշատակում է տոհմական երկու դրոշ, որ հանդես են եկել Կիլիկյան թագավորության անկումից շատ ավելի ուշ, իր նախորդների կողմից Կիլիկիայի ազատության նախագծերում: Դրոշներից մեկն ամբողջությամբ «դեղին» (ոսկեգույն) երանգով էր՝ «կեդրոնը ունենալով վերոհիշյալ (թագակիր, խաչակիր—Ա. Թ.) առիծը. իսկ պաստառին ամէն մէկ անկիւնին մեջ՝ մեկական ոսկի պսակ: Երկրորդը, կոչված «Վառ Հայաստանի», եւ իրենց ավանդութենեն համարուած իբր Հայ ազգին հնագոյն դրոշներէն մէկը, կը կազմուի երեք խոտորնակ երիզներէ, դեղին-կարմիր-դեղին, միջինը ավելի լայն, քան

մյուսները» (Հ. Վարդան Վ. Հացունի):

Այսպիսով, կարծում ենք, որպես «հայկական գույներ» կարելի է առնվազն երեքը՝ կարմիրը, կապույտը և ոսկեգույնը (ցորնագույնը), բավարար չափով հիմնավոր համարել:

Երբ 1918 թ. վերականգնվեց հայ պետականությունը, և դրվեց հանրապետության պետական դրոշի վերականգնման հարցը ևս, տարբեր մասնագետների ու գիտնականների կողմից հիմնավոր ու անհիմն բազմաթիվ առաջարկներ արվեցին: Առաջարկվում էին, օրինակ, կարմիր-կանաչ-սպիտակ կամ դեղին-կարմիր-կանաչ (երկուսն էլ ըստ Ղ. Ալիշանի) եռագույնները, Կիպրոս-Կիլիկյան միացյալ թագավորության սպիտակ-կապույտ-կարմիր-դեղին (ըստ Հր. Աճառյանի) քառագույնը և այլն:

Պառլամենտի քննարկմանը դրվեց նաև Վարդան Հացունու կողմից իտալացի արվեստագետների համագործակցությամբ կազմած դրոշը՝ ծիրանագույն ծոպավոր պաստառ՝ Հայկական երեք թագավորություններն ու քրիստոնեությունը խորհրդանշող ոսկեթել դրոշմներով:

Ի դեպ, դրոշի ժամանակավոր ընդունումից հետո, 1919 թ. հուլիսին, Նոր Նախիջևանից Ալ. Խատիսյանի անունով դրոշների իր երեք տարբերակներն էր ուղարկել Մարտիրոս Սարյանը: Դրանցից մեկը կազմված էր ծիածանի երեք հիմնական գույներից՝ կարմիր-դեղին-կապույտ դասավորությամբ, մյուս երկուսը կազմված էին ծիածանի հիմնական և լրացուցիչ 6 գույներից՝ կարմիր-ցորնագույն-դեղին-կանաչ-կապույտ-մանուշակագույն՝ գունաշերտի տարբեր համաչափությամբ: Մ. Սարյանի կարծիքով՝ Հայաստանի դրոշը, որպես հարավային երկրի, բազմագույն, վառվռուն պիտի լիներ:

1918 թ. օգոստոսի սկզբին Հայոց պառլամենտը քննարկման դրեց դրոշի հարցը՝ նկատի ունենալով, որ «մեր Ազգն և ազատութիւնը նոր չեն ստեղծուիր, այլ կը վերականգնին: Պատշաճ է՝ որ միասին վերականգնին իրենց հարազատ նշանակներն ալ...»: Բուռն վիճաբանություններից հետո լսելով անվանի հայագետ Ստեփանոս Մալխասյանի բացատրությունները, պառլամենտը հիմնավոր համարեց Ծահամիրյանի նախագծում առաջարկված եռագույնը և ընդունեց կարմիր-կապույտ-ոսկեգույն (ցորնագույն-նարնջագույն) տարբերակով:

Այսպիսով. Հայաստանի հանրապետության եռագույն դրոշի գույները ոչ միայն պատահական ու մտացածին չեն, այլ հիմնավորված, պատմականորեն հայկական ճանաչված գույներ են:

1922 թ. փետրվարին Հայաստանի խորհուրդների առաջին համագումարն ընդունեց նոր՝ Խորհրդային Հայաստանի պետական դրոշը, որը ԽՍՀՄ դրոշի կրկնօրինակն էր՝ ամբողջությամբ կարմիր, ձախ վերին մասում «ՀԽՍՀ» տառերով: 1952 թ. հանրապետության Գերագույն խորհրդի հրամանագրով դրոշում փոփոխություններ մտցվեցին, կարմիր պաստառի միջին մասով անցկացվեց հորիզոնական կապույտ շերտ, իսկ «ՀԽՍՀ» տառերը փոխարինվեցին աստղի և մուրճ ու մանգաղի նշաններով:

# « ՁԵՂՊԵՄՆԵՐԻՆ ՄԻՇՏ ԵՐԱՆԻ... »

**ՀԱՅԿԱԶ ՊՈՂՈՍՅԱՆ**
պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## Հաճի Հակոբ Կոտոյան

**Ծնվել է Մուշ քաղաքում, ներկարար Գևորգի (Կոտոյի) ընտանիքում, սկզբնական կրթությունը ստացել է ծննդավայրում, ապա 1880-ականներին սովորել է միացյալ ընկերության Մուշի կենտրոնական վարժարանում, որի տեսուչն էր Մըկրտիչ Սարըյանը: Շատ ճարպիկ էր ու** չարաճճի և «շարունակ կռիվ կըներ տըղոց հետ»: Դպրոցում երկու տարի սովորեց, ապա թողեց ուսումը, որից հետո մի տարի թրքագետ Կարապետի մոտ սկսեց թուրքերենի ուսումնառությունը: Դրանից հետո սկսեց զբաղվել որսորդությամբ, ապա ծանոթացավ Արաբոյի և նրա խմբի անդամների հետ: Այդ ժամանակ Մուշի ցեղապետներից մեկի տղան՝ Սալեհը, փակել էր դեպի Սասուն տանող ճանապարհները: Արաբոյի խումբը. որի հետ էր նաև Հակոբը, քշում էր Սալեհի անասունները, վաճառում, ապա՝ զենք գնում: Իմանալով այդ մասին, Սալեհը Հակոբի հորից գանձում է 50 ոսկի: Այդ օրերին Մուշից Սասուն է բարձրանում Մ. Տամատյանը: Հակոբը ծանոթանում է նրա հետ և ընդունում է նրա քարոզած գաղափարները՝ այն է. զենք ձեռք բերել և, երբ թշնամին հարձակվի իրենց վրա, անցնել ինքնապաշտպանության: Այդ ժամանակ (1890-ականների սկզբներին) Հակոբը բանտարկվեց Մուշի մի շարք մարդկանց հետ: Բանտարկյալներին տանում են Բիթլիս, որտեղ Հակոբին դատարանը դատում է և որոշում 15 տարվա բանտարկություն: Նրա հետ տարված բանտարկյալներից մի քանիսը մահվան դատապարտվեցին: Դատարանի վճռից հետո Հակոբը 30 երիտասարդների հետ աքսորվեց Սինոպ, որտեղ երկու տարի մնալուց հետո աքսորվեց Աքքայի բանտը: 1895 թ. ներման արժանացավ և բոլոր բանտարկյալների հետ մեկնեց Երուսաղեմ, դարձավ հաճի, ապա վերադարձավ Մուշ: Այստեղից էլ նրան կոչեցին Հաճի Հակոբ Կոտոյան:

Երբ վերադարձավ, հայրը արդեն մեռած էր: Վերադառնալուց հետո ամուսնանում է, սակայն դա չի խանգարում նրան ուժեղ կապեր պահպանել հայդուկներից Գուրգենի, Հրայրի, Աղբյուր Սերոբի, Անդրանիկի և ուրիշների հետ: Դրանից հետո նա մի անգամ էլ բանտարկվեց և մի կերպ կաշառքով ազատվեց: Երբ տեսավ, որ նյութական միջոցներ չունի մի անգամ էլ բանտարկվելու դեպքում կաշառել թուրքական աստիճանավորներին, ստիպված թողեց տուն ու տեղը և բարձրացավ Սասունի լեռները, միացավ հայդուկներին, որոնց մեջ էր նաև Անդրանիկը: Շատ չանցած մի վեճի պատճառով թողեց խումբը և իջավ Սեմալ գյուղը, երկու տարի զբաղվեց ծխախոտի մը-


Մուշ քաղաքը

շակությամբ: Հաճի Հակոբ Կոտոյանը 1901 թ. մասնակցեց Առաքելոց վանքի կռիվներին և աչքի ընկավ իր հաստատակամությամբ և կռվելու ձիրքով:

1904 թ. սկսվեցին Սասունի լեռնականների հերոսական ինքնապաշտպանական կռիվները: Ինչպես երկրի, այնպես էլ դրսից եկած հայդուկային ուժերը, կուրծք տված թշնամու գրոհներին, սասունցիների հետ պաշտպանում էին Սասունի հերոս լեռնականներին: Կռվի ավարտից հետո Անդրանիկը իր ընկերների հետ անցավ Աղթամար: Հաճի Հակոբ Կոտոյանը նրանց մեջ էր թե՛ կռիվների և թե՛ Աղթամար գնալու ժամանակ: Խումբը անցավ Պարսկաստան: Հաճին մի ժամանակ Պարսկաստանում մնալուց հետո անցնում է Ռուսաստան և իր հայրենակից Սմբատ Բորոյանի հետ հաստատվում Բաթումում: Պարսկաստանում բժիշկը ցանկացավ հեռացնել նրա ցուցամատը, որի մի մասը գնդակը տարել էր 1904 թ. կռիվներից մեկի ժամանակ: Բժիշկը ցանկանում էր մատը թմրեցնել և ապա վիրահատել: Իմանալով այդ մասին, Հաճին ամուր նըստում է աթոռի վրա, ապա գրպանից հանում է թաշկինակը «և քանի մը անգամ ծալելով բերանը կոխեց ու ձեռքը երկընցուց զարմացած բժշկին՝ իշտե գործդ ըկսե»: Ժամանակակիցներից մեկի վկայությամբ «ամբողջ գործողության ժամանակ մեր Կոտոյի Հաճին ուֆ մը իսկ չըրավ...»:

1905 թ. երբ ցարական կառավարության և թուրքական իշխանությունների կազմակերպած ջանքերի միջոցով սկըսվեցին Անդրկովկասում հայ-թաթարական անմիտ ազգամիջյան կռիվները, Հաճին Սմբատի հետ գտնվում էր Ղամարլուի (Արտաշատ) շրջանում: Շատ չանցած Հաճին Պարսկաստանում էր, ուր և ակտիվ մասնակցություն է ունենում այնտեղ սկսված սահմանադրական շարժմանը և կռիվներին: Նա միշտ էլ գտնվում էր Քեռու կողքին (Արշակ Կաֆաֆյան):

1908 թ., Թուրքիայում սկսված հեղաշրջումից և սահմանադրական շարժումից հետո Հաճին Մուշում էր: Մինչ այդ մահացել էին նրա երեք եղբայրները: Մելքոնը մեռել էր բնական մահով, Համբարձումը՝ վիրավորվել էր Սասունում և փոխադրվել Մուշ, ուր և կնքել էր իր մահկանացուն: Իսկ Հաճիի երրորդ եղբայրը՝ մասնակցելով հեղափոխական շարժումներին, 1907 թ. բանտ էր նետվել և մահացել այնտեղ տիֆից: 1908 թ. հեղաշըրջումից հետո Հաճին զբաղվեց մեղվաբուծությամբ:

1915 թ. թուրքական իշխանություններին հաջողվեց խաբելու միջոցով Մուշ քաղաքի բնակիչների մի մասին տանել քաղաքից դուրս և սպանել: Սակայն Մուշի մնացած բնակիչները Հաճի Հակոբ Կոտոյանի, Կորյունի, Մճոյի ղեկավարությամբ որոշեցին կռվել «քաջությամբ մեռնիլ ի վերայ, աշխարհիս մեր» նշանաբանով և անցան ինքնապաշտպանության: Կռվող տղամարդկանց կողքին կանգնեցին նաև Մուշի կանայք ու աղջիկները: Իրավացի է մասնակիցներից մեկը, երբ

հերոսամարտին մասնակցող կանանց մասին գրում է. «Ծնան աղջիկ, ապրեցան տանջանքը և մեռան իբրև հերոս տղամարդ»:

Ինքնապաշտպանական այդ կռիվների ժամանակ Հաճի Հակոբ Կոտոյանը երեք անգամ վիրավորվեց, սակայն մնաց դիրքերում: Դիրքերում էին նաև Հաճիի կինը՝ Ցողոն, քույրը՝ Փառանձեմը, և տղան՝ Կյուլպենկը, որ չնայած այդ ժամանակ ընդամենը 15 տարեկան էր, սակայն կռվողների հիացմունքին էր արժանացել: Հասակակից տղաների հետ նա մի դիրքից մյուսն էր անցնում և կռվողներին հաղորդում ինքնապաշտպանության ղեկավարների հրահանգները:

Հաճիի և իր ընկերների կազմակերպած Մուշի ինքնապաշտպանական կռիվը տևեց մի քանի օր: Կռվողները, որոնք մոտ 60 հոգի էին, ունեին մի քանի տասնյակ հրացան և 30 հազար փամփուշտ, որից 24 հազարը կրակվեց երկու օրում: Վերջին օրը, երբ ինքնապաշտպանության ելածները զգացին, որ անհնարին է դիմադրել թշնամու հսկայական ուժերին, որոշեցին քաղաքից դուրս գալ, անցնել գետը և բարձրանալ Սասունի լեռները: Երբ Մուշի բնակիչները ցանկանում էին գետն անցնել, թշնամին նկատում է այդ ու սկսում է ժողովրդին առնել կրակի տակ: Փախստական բնակիչների մի մասին թուրքական զորքերը սպանեցին Քոփ և Կերմավ գյուղերի մոտ, սակայն նրանց մի մասին հաջողվեց մի կերպ ազատվել հետապնդումից և հասնել Սասուն: Աղյուծաբար էին կռվում Մուշի ինքնապաշտպանական կռիվների ղեկավարներ Հաճի Հակոբն ու Պոլեյի (Պոլեյան) Մնոն: Հակոբի տղան՝ զենքը ձեռքին, ընկավ կռվում (ոմանք ասում են, որ նա խեղդվել է գետն անցնելու ժամանակ), իսկ Կոտոյան Հաճին կռվի վերջին օրը, երբ զգաց, որ արդեն վերջացել է ռազմամթերքը, «տունը կրակի կուտա, կինը կգնդակահարե, ու ինքն ալ ամեհի առյուծի պես մռնչալով կիյնա յուր վերջին գնդակեն»:

Այսպիսով, հին հայդուկ Հաճի Հակոբ Կոտոյանը իր ընտանիքի հետ միասին ընկավ Մուշի ինքնապաշտպանական կռիվների ժամանակ: Իր և կնոջ կյանքը վերջացրեց, սակայն չցանկացավ ենթարկվել թուրքական ջարդարարների քմահաճույքին:





ԶԱՎԵՆ ԲԵԿՅԱՆ

***

Այսպես ներհուն գիշերվա մեջ
Մնալ արթուն ու անքուն,
երբ մայիսյան բզեզի պես
Տիեզերքն է զրնգում...

Երբ չգիտես, թե խժալուր՝
ո՞ւր է թռչում ու ինչու...
Երբ, հոգնելով զարմանալուց,
սիրտն է հարբում Ոչնչից...

Եվ նիրհում է անուշ-խումար՝
բազրիքներին աստղահուռ,
ուրանալով ծնունդ ու մահ,—
աշխարհն՝ երա՞զ ու համբույր...

## Ձյունը

Ձյունը նման է երկնային կաթի։
Ձյունը երկնային կաթն է հենց, որ կա,
որ հոսում է քո տխրության առթիվ
(ո՞վ է արտասվում անունդ գրկած...)։

Ընդունիր նորից՝ թե իր սափորն ես,
ու մխիթարվիր թախծով երգեցիկ։
Չի արյունակից չեն ու խաբում են
կեղծ սիրո ցույցով օրերն ընկեցիկ...

Ձյունը նման է խաղաղ շղարշի,
որ շղարշում է սրտի աչքն անքուն։
Մատների հպում կա ամեն նախշից—
շղարշի տերը կամ մայր է, կամ քույր...

Ընդունիր նորից՝ թե իր որդին ես,
թե դեռ եղբայրն ես իր արյունակից։
Ընդունիր, քանզի այս ցավը հին է
առօրյա խինդի ծույլ հրեշտակից...

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

## Ապրիլ աղջիկ

Նորից ցոլակն, նորից թխահեր՝
Նեկտար է հեղում Արբունաց փարչից։
Ձնծաղիկների շքախմբի հետ
Ծեմում է նորից-բոկոտն աղջի՜կ...

Գառների հոտ է իր հետքով տանում—
Նորահաս սրտում սրինգնե՞ր ունի...
Մի երկինք սեր է բերել նա կանուխ—
Եվ աղավնիներ պիտի ղունղունեն...

Ծիծեռնակների երամն է իր հետ—
ամեն ճռվողյուն՝ իր քնքին մի զարդ։
Մրահոն (սաթի սևն է խելահեղ...),
և ճերմակ—իսկը կաթի ավազա՜ն...

Եվ խենթ ջրերի երթը մանկական
Նրա ոտքերին մերձ է թափառում։
Ամեն ինչ աչք է, ամեն ինչ՝ ականջ—
ձայնը կոհակ է, մեղեդին՝ առո՜ւ...

## Կիրակի

Ուր խատուտիկն է մտմտում
հացեն թռչող իր պսակի։
Զատկի գունդն է հուրհրատում
Նման անհայտ մոլորակի...

Այ, հենց այստեղ նորից գտա
գոյակցության ոգին անփույթ
և խմեցի մինչև հատակ
երկինքների թասը կապույտ...

Թե թիթեռը թևխուփ—սանր է,
արևքուրի՜կ, քո գիսակին,
պիտի կանչեմ երգահաններ,
որ գան, շուք տան մեր պսակին...

# ՉՄՈՌԱՆԱՆՔ ՆԱԵՎ ՆՐԱՆՑ



Հայ ժողովրդի ինքնագտնումի այս դժվար ճանապարհին հազար ու մի խնդիրներ կան լուծելու: Դրանցից մի քանիսը հենց այժմ ծառացած են մեր առջև և անհետաձգելի պատասխաններ են պահանջում: Այսօր եթե դրանք չլուծվեն, վաղը ավելի ծանր վիճակում կհայտնվենք: Եվ հայ ժողովուրդը մեծ ու փոքրով պատեպատ է խփվում, ելքի ճշմարիտ ուղիներ է փնտրում, որովհետև այլևս անհնար է ապրել այնպես, ինչպես ապրել ենք վերջին 70 տարում: Հանկարծ պարզվեց, որ մեր կյանքի բոլոր կողմերը, ուզում էի գրել «ստվերոտ են», բայց ի՞նչ ստվերոտ, ուղղակի թանձր մութով են պատած: Անելիքներն անքանակ են: Մեզ համազգային հստակ ծրագիր է անհրաժեշտ, որը պետք է ընդգրկի ժողովրդին հուզող բոլոր խնդիրները: Ճիշտ ընթացք չընտրելու դեպքում այսօր երկրորդական թվացող հարցերը կարող են նոր ճգնաժամերի առաջ կանգնեցնել: Վտանգավորըն այն է, որ համընդհանուր ոգևորությունը կարող է միայն մի ուղղությամբ ընթանալ, և մեկ էլ կպարզվի՝ մոռացություն ենք տվել շատ ու շատ հարցեր: Ահա այդ հարցերից մեկի մասին եմ ուզում գրել:

Տասնամյակներ շարունակ մեր հասարակությունը բազմաթիվ խոցեր ու արատներ չտեսնելու է տվել, ընդունված չի եղել դրանց մասին բարձրաձայն խոսել: Բայց եթե չտեսնելու ես տալիս, չի նշանակում, թե ցավը չկա: Ընդհակառակը՝ այն ավելի է խորանում: Եվ այսպես, պարզվում է, որ Երևանում գործում են հատուկ ուսումնարան և հատուկ դպրոց, որտեղ, փաստորեն հասարակությունից մեկուսացված, ապրում ու սովորում են հանցանք կատարած անչափահասները: Սովետաշենում գտնվող դպրոցին մի այլ անգամ անդրադառնալու խոստումով՝ պատմենք ուսումնարանի մասին:

Քաղաքի խիտ բնակեցված թաղամասերից մեկում՝ Էրեբունիում է տեղակայված № 1 հատուկ ուսումնարանը: Հենց սկզբից ասենք, որ նման հիմնարկի համար նախատեսված պայմաններն այստեղ բացակայում են: Ըստ կարգի՝ այն պետք է առանձին տարածք ունենա, բնակավայրից դուրս լինի, մինչդեռ մի տեղ խըցկելու, մի կերպ յոլա տանելու հոգեբանու-

թյամբ, մի քանի տեղափոխությունից հետո, հատուկ ուսումնարանին հատկացվել է № 23 պրոֆտեխնիկական ուսումնարանի մասնաշենքերից մեկի մի մասը։ Մեր այցելության ժամանակ ուսումնարանը 13 սան ուներ, որոնցից երկուսը փախուստի մեջ էին։ Ոչ ոք ստույգ տեղեկություն չուներ նրանց մասին։ Ճշմարտության դեմ չմեղանչելու համար ասենք, որ կոլեկտիվի խիստ սահմանափակ հնարավորությունները գրեթե անհնար են դարձնում փախած երեխային գտնելն ու ետ վերադարձնելը։ Սաների թիվն այստեղ ևս հարաբերական է. այն մերթ կարող է դառնալ 40—50, մերթ՝ հասնել նվազագույնի։ Այնպես որ, ուսումնարանի նկատմամբ առկա կիսաանտարբեր մոտեցումը սաների փոքր քանակով պատճառաբանելը արդարացված չէ։ Քիչ են այստեղ բերվածները, որովհետև իրենց պարտականություններում թերանում են ներքին գործերի անչափահասներով զբաղվող բաժինները։ Ուսումնարանի տնօրեն Մ. Խաչատրյանի տվյալներով՝ վերջին շրջանում տարիքային այս խմբի կատարած իրավախախտումների դեպքերը ոչ միայն չեն նվազել, այլ ընդհակառակը՝ ավելացել են։

Առաջին հայացքից սովորական ուսումնական առօրյա է։ 14—17 տարեկան տղաները հանրակրթական դպրոցի ծրագրով դասեր են պարապում, մասնագիտություն սովորում կարի և կենցաղային սարքերի վերանորոգման արհեստանոցներում, երեկոներն անցկացնում են ռեժիմի հերթապահների հսկողությամբ։ Բայց ինչ-որ ճնշող բան կա ուսումնարանի մթնոլորտում։ Համաձայնենք՝ հաճելի զգացողություն չես ունենա, երբ դրսում կյանքն ընթանում է, քո հասակակիցները խաղում ու աղմկում են, իսկ դու հարկադրված ես նրանց նայել ճաղապատ պատուհաններից։ Ես մեջ եմ բերում մի հատված տնօրենի հաշվետվությունից, ուր ներկայացված է հաստատության վիճակը մոտիկ անցյալում. «Ուսումնարանի ղեկավարության ոչ կայուն կազմը և հաճախակի փոփոխումը, կադրերի ոչ ճիշտ տեղաբաշխումը տարիներ շարունակ իրենց բացասական կնիքն են թողել իրավախախտ անչափահասների վերադաստիարակության վրա, կոլեկտիվում ստեղծել են բարոյահոգեբանական աննորմալ մթնոլորտ։ Ռեժիմի հերթապահներն ու որոշ մանկավարժներ կիրառել են վերադաստիարակման «իրենց» մեթոդները՝ խախտելով վարվեցողության տարրական նորմերը։ Նման վարքագիծը ապակողմնորոշել է սաներին, խախտել հավատը ավագների, բարու, լավի նկատմամբ, հաճախ նրանց մղել ըմբոստացման, բողոքի յուրօրինակ ձևերի կիրառման, ընդհուպ մինչև ինքնասպանության փորձեր»։

Եվ բանն հասել է այնտեղ, որ 1987 թվականին սաներից մեկը պատժախցում ինքնասպանություն է գործել։ Պատժախուցն այժմ էլ կա, թեև մեզ ասացին, որ այն չեն օգտագործում։ Ինչևէ։ Այստեղ բերված երեխաները գողություն են արել, թափառաշրջիկ կյանք վարել, չեն հաճախել դպրոց, հակահասարակական ինչ-որ արարք են կատարել։ Նրանց մի մասն ազատվելուց հետո վերադառնում է բնական կյանքի, սակայն մի մասն էլ նոր հանցագործություն է կատարում և դատապարտվում ազատազրկման։ Ուսումնարանում տարվող վերադաստիարակման աշխատանքների արդյունավետությունից է այսպիսով կախված, թե քանի պատանի լիարժեք քաղաքացի կդառնա, քանիսն ավելի ու ավելի կխրվի հանցագործության ետնախորշը։ Ուրեմն՝ ամեն կերպ պետք է օգնել ուսումնարանի կոլեկտիվին, պետք է օգնել իրենց՝ երեխաներին, որպեսզի կարողանան ոտքի կանգնել, ընտանիք ու հասարակություն վերադառնալ։ Դրա համար ամենից ավելի հոգատարություն է անհրաժեշտ։ «Ինչի՞ կարիք եք այստեղ զգում» հարցին գրեթե բոլոր երեխաները պատասխանում էին. «Հողամաս լինեի, աշխատեինք, ինչ-որ բան մեր ձեռքով աճեցնեինք, կենդանիներ պահեինք»։ Այս հնարավորությունը ժողովրդական կրթության նախարարությունը անպայման պետք է ստեղծի ու իհարկե նաև զբաղվի ուսումնարանի մյուս չլուծված խնդիրներով։ Օրինակ. խիստ ճնշող տպավորություն էր թողնում ճաշարանը, կասկածելի էր մատուցվող ուտելիքի որակը։ Հարցեր էլի կան։ Բայց կարևորը դրանց թվարկումը չէ, այլ՝ այս կարգի երեխաների հանդեպ մեր վերաբերմունքը փոխելու անհրաժեշտության գիտակցումը։ Այս տարիքում նրանք դեռ կարող են ուղղվել, հետո ուշ կլինի։ Այդ երեխաները մեր ժողովրդի զավակներն են, և նրանց փրկելը մեր պարտքն է։ Եկեք հարյուրավոր մեծ ու փոքր ազգային հարցերի ոլորապտույտում չմոռանանք նաև նրանց։

Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

# Հայոց ազգային դպրոց. ինչպիսին պետք է լինի այն

**Մեր աշխատակից ԾՈՒՇԱՆԻԿ ՂԱԶԱՐՅԱՆԻ հարցերին պատասխանում է ՀԽՍՀ ժողովրդական կրթության փոխնախարար, պրոֆեսոր ԷԴՈՒԱՐԴ ՂԱԶԱՐՅԱՆԸ։**



ՀԱՐՑ.— Երկրի ընդհանուր վերակառուցման պայմաններում հրամայական պահանջ է առաջացել սկզբունքային փոփոխություններ մտցնել նաև կրթական համակարգում, ստեղծել ազգային լիարժեք դպրոց։ Այս ուղղությամբ ի՞նչ է կատարվում մեր հանրապետությունում։

ՊԱՏԱՍԽԱՆ.— Այժմ, երբ ազգային զարթոնքի կենդանարար ալիքը ընդգրկել է կյանքի համարյա բոլոր ոլորտները, անհնար է այլևս կրթական հին մեթոդներով ու ծրագրերով աշխատել դպրոցում։ Այսօրվա պատանին իր մտքի հասունությամբ խորապես տարբերվում է թեկուզ երկու տարի առաջվա իր հասակակցից և նա ինքն էլ հենց թելադրում է այն հիմնարար վերանորոգումները, որոնք այսօր նախապատրաստվում են կրթական սիստեմում։ Հեղափոխական խանդավառությունը հասցրել էր այն բանին, որ նույնիսկ անվանի մարդիկ պահանջում էին ստեղծել պրոլետարական գրականություն անցյալի հոգևոր արժեքներից կտրված։ Հանրակրթական դպրոցի հիմքում ընկած էր «ինտերնացիոնալիստ» քաղաքացի պատրաստելու խնդիրը, որը, իբր թե հեռու լինելով ազգայինից, չի նպաստի նացիոնալիզմի աշխուժացմանը։ Այդ քաղաքականությունից հատկապես տուժեց հայոց դպրոցը։ Ուսուցման ծրագրերից հանվեցին այնպիսի առարկաներ, ինչպիսիք են վայելչագրությունը, ազգային երգ-երաժշտությունը, արվեստն ու ժողովրդական արհեստները, կրճատվեցին հայոց պատմության, հայոց լեզվի և գրականության ժամերը և, որ ամենատխուրն էր, խստագույնս արգելվեց հայ եկեղեցու դերի, քրիստոնեության պատմության խորը ուսումնասիրությունը, որն էլ հենց ազգային ոգու քաղց, բարոյական անկում բերեց, և նրա վնասները քանի սերունդ դեռ պիտի մարսի։ Հայ մշակույթի պատմությունը չի կարելի զատել հայ առաքելական եկեղեցու պատմությունից։ Հայոց հոգևոր կենտրոնները գործել են եկեղեցիներին կից, մեր հանճարեղ գրքերն ու իմաստասիրական երկերը ստեղծվել են վանքերի խցերում։ Հայոց առաքելական եկեղեցին մեր ազգային արժանապատվությունն է, մեր հոգևոր արիության անլռելի զանգակատունը։ Լիարժեք սերունդ կրթելու համար, մենք այսօր պետք է միասնաբար մտածենք, ստեղծենք ազգային միասնության ընդհանուր ճակատ ժողովրդի բոլոր ու-

ժերի համախմբմամբ, որպեսզի վերականգնենք մեր կատարյալ ազգային դպրոցը՝ հայոց ավանդական դպրոցի օրինակով:

ՀԱՐՑ.— Ինպե՞ս եք պատկերացնում թվարկված առարկաների ուսուցումը հայոց ազգային դպրոցում, և մո՞տ է արդյոք այդ օրը:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Իհարկե, մոտ է: Առանց այդ էլ շատ ենք ուշացել: Մեր բոլոր ծրագրերի իրականացումը սկսելու ենք այս ուսումնական տարվանից, միանգամայն փոխված ծրագրերով, դասավանդման նոր մեթոդներով, անգամ կաբինետների նոր ձևավորումներով: Այս ամենի նպատակը հայ երեխա, ապագայի հայ քաղաքացի դաստիարակելն է:

Առաջին հերթին արմատական փոփոխություններ ենք մտցրել պատմության առարկաների դասընթացներում: Ծեշտակիորեն ավելացվել է հայոց պատմության դասաժամերի թիվը: Արդեն պատրաստ են ուսուցման ծրագրերի երկու տարբերակ և հայոց պատմության տարբեր շրջանները ներկայացնող մի քանի պրակներ, որոնք դպրոցական նոր դասագրքի ստեղծման հիմք կդառնան: Հավաքվել և տպագրության է պատրաստվում «Պատմության դասեր» խորագրով հոդվածների և նյութերի ժողովածուն, որը գործնական օգնություն ցույց կտա ուսուցիչներին: Ավելին, այս տարի դադարեցրել ենք ԽՍՀՄ պատմության դասագրքի տպագրությունը մեր հանրապետությունում, հաշվի առնելով, որ այն լի է հայոց պատմության դեմ մեղանչող, մեր ազգային արժանապատվությունը ոտնահարող բազմաթիվ փաստական ու թվական սխալներով: Այդօրինակ ձեռնարկը մենք կտրականապես մերժում ենք, և այն հավանաբար լույս կտեսնի մեր պատմաբանների ուղղում-մեկնաբանությունները պարունակող լրացուցիչ հավելվածով միայն:

Ստեղծվում են հայոց լեզվի և գրականության, Հայաստանի աշխարհագրության, կերպարվեստի և տեղական մյուս առարկաների նոր ծրագրեր, որոնց համապատասխան կվերամշակվեն ու կկատարելագործվեն դասագրքերը: Արդեն տպագրության է հանձնված 5-րդ դասարանի նոր առարկայի՝ բնագիտության դասագիրքը: Հանրակրթական առարկաների թվի կրճատման հաշվին, դպրոցների ընտրությամբ, կմտցվեն գոյապահպանական կրթություն, հայ առաքելական եկեղեցու պատմություն և այլ առարկաներ: Առաջին գործնական քայլերն է արվում միջին դասարանների համար բնագիտություն առարկայի փորձնական ծրագիր և դասագիրք ստեղծելու ուղղությամբ:

ՀԱՐՑ.— Այս ուսումնական տարվանից, որոշ դպրոցներում տեղական նախաձեռնությամբ փորձեր են արվում երեխաներին գիտելիքներ տալ քրիստոնեության, հայոց եկեղեցու պատմության մասին: Ապագայում այն դառնալո՞ւ է կայուն առարկա դպրոցում:

ՊԱՏԱՍԽԱՆ.— Մինիստրության վերաբերմունքը այս հարցին դրական է, ավելին, մենք այդ իրավունքը տվել ենք բոլոր դպրոցներին, մնում է՝ իրենք որոշեն դասաժամերի քանակը: Մինչդեռ պարզելու համար, բացատրեմ հետևյալը: Դասաժամերի 20 տոկոսը, առհասարակ, դրված է դպրոցների տնօրինության տակ: Նրանք ինքնուրույն կարող են որոշել այդ ժամերը որ առարկային տրամադրեն: Մեկը կարող է վայելչագրությունը ընտրել, մյուսը՝ ժողովրդական արհեստները, մեկ ուրիշը՝ դպրոցի պրոֆիլին համապատասխան: Այսինքն՝ տրված է ազատ ընտրության իրավունք: Մեզ մտահոգում է դասագրքերի և մանկավարժ մասնագետների խնդիրը, որի բացակայությունը լուրջ պրոբլեմների առաջ կարող է կանգնեցնել: Հանձնարարվել է միջքուհական աթեիզմի ամբիոնին, մասնագետ կադրեր պատրաստելու նպատակով փոփոխություն մտցնել նաև բուհերի ծրագրերում: Ի դեպ, այժմ այդ ամբիոնը կոչվում է աթեիզմի և կրոնի ամբիոն: Եվ հենց այս ամբիոնն էլ հինգ տարի հետո մեզ կտա կրոնի մասնագետներ դպրոցի համար: Բայց մենք հինգ տարի չենք կարող պարապ սպասումների մեջ անցկացնել: Գարնանից կազմակերպելու ենք որակավորման դասընթացներ այն ուսուցիչների համար, որոնք ժամանակավորապես պետք է դասավանդեն այդ առարկան, մինչև սեպտեմբեր կկազմվեն փորձնական ուսուցիչները: Առարկան պայմանականորեն կոչվելու է «Հայոց առաքելական եկեղեցի» կամ «Քրիստոնեական եկեղեցու առաքելությունը»: Ինչպես էլ որ այն կոչվի, կարևորն առաջին կայծերն են, որոնք անպայման կբոցավառեն ազգային զարթոնքի, ազգային ինքնագիտակցության լուսարար ջահը:

# ՆՇԱՆԱՎՈՐ ՄԱՐԴԿԱՆՑ ՀՈՒՄՈՐԸ

## ԱԼԲԵՐՏ ԷՅՆՇՏԵՅՆ 1879–1955

$E=mc^2$



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ՆԱՐԱՊԵՏՅԱՆԻ

— Պարոն Էյնշտեյն, մի՞թե ձեզ պատիվ է բերում շրջել Նյու-Յորքի նման հսկա քաղաքում այս հնամաշ վերարկուով,— դիմելով ԱՄՆ-ում նոր հաստատված հռչակավոր ֆիզիկոսին, ասում է նրա ծանոթներից մեկը:

— Դա ի՞նչ նշանակություն ունի,— հանգիստ պատասխանում է Էյնշտեյնը,— ինձ այստեղ ոչ ոք չի ճանաչում:

Երկու տարի հետո նույն ծանոթը հանդիպում է Էյնշտեյնին, որը շարունակում էր հագնել նույն վերարկուն:

— Պարոն Էյնշտեյն, մի՞թե ձեզ պատիվ է բերում շրջել Նյու-Յորքի նման հսկա քաղաքում նույն հնամաշ վերարկուով,— կրկին հարցնում է նա:

— Դա ի՞նչ նշանակություն ունի,— անվրդով պատասխանում է գիտնականը,— ինձ այստեղ բոլորը ճանաչում են:

Մի ճաշկերույթի ժամանակ յոթանասունամյա Էյնշտեյնի մոտ նստած տասնութամյա մի օրիորդ, դիմելով հռչակավոր գիտնականին, հարցնում է.

— Պարոն Էյնշտեյն, ո՞րն է ձեր մասնագիտությունը:

— Ես, աղջիկս,— համեստորեն պատասխանում է Էյնշտեյնը,— ֆիզիկա եմ ուսումնասիրում:

— Ի՞նչ,— զարմացած բացականչում է օրիորդը,— ձեր տարիքում ֆիզիկա՞ ուսումնասիրել: Ես անցյալ տարի եմ վերջացրել ֆիզիկայի ուսումնասիրությունը:

«Ոսկե կրակ» կինոֆիլմը, որի գլխավոր դերակատարը Չարլի Չապլինն էր, հսկայական հաջողություն է ունենում: Այդ կապակցությամբ Էյնշտեյնը մի նամակ է հղում նշանավոր կինոդերասանին, որտեղ մասնավորապես գրում է. «Ձեր արվեստը բոլորի համար հասկանալի է, դուք, անկասկած, մեծ արվեստագետ եք»: Չարլի Չապլինը պատասխանում է հետևյալ ձևով. «Ձեր հարաբերականության տեսությունը բոլորի համար անհասկանալի է, Դուք, անկասկած, աշխարհահռչակ գիտնական եք»:

Մի կին թախանձագին խնդրում է Էյնշտեյնին զանգահարել իրեն.

— Իմ հեռախոսի համարը՝ 36—361, շատ հեշտ է հիշել,— կրկնում է նա:

— Դուք իրավացի եք, տիկին,— պատասխանում է գիտնականը,— երեք դյուժին և տասնինի քառակուսին:

Էյնշտեյնը, մտքերի մեջ խորասուզված, աշխատում էր: Հանկարծ ներս է վազում ծառան և գոռում.

— Պարոն, գողեր են մտել գրադարան:

Էյնշտեյնը բարձրացնում է գլուխը և հանգիստ հարցնում.

— Կարո՞ղ ես ասել, ի՞նչ գրքեր են կարդում:

— Ժամանակակից քիմիայի ո՞ր գյուտը ունեցավ ամենամեծ ազդեցությունը մեր ապրած ժամանակի վրա,— հարցրին Էյնշտեյնին:

— Կանանց մազերը ներկելը,— պատասխանեց հռչակավոր գիտնականը:

## Բայրոնի վեհանձնությունը

Մի երիտասարդ, որն իրեն վստահված գումարը մսխելու պատճառով բարկացրել էր հորը, լքում է հայրական օջախը և Լոնդոն գալիս՝ աշխատանք որոնելու: Սակայն աշխատանք գտնել նրան չի հաջողվում, ունեցած փողը շուտով սպառվում է, և նա սկսում է աննպատակ թափառել այդ մեծ քաղաքում, ուր ոչ մի ծանոթ չուներ: Սովից չմեռնելու համար պոեմ է գրում և այն վաճառելու նպատակով դիմում է մի քանի գրավաճառների, սակայն գնորդ չի գտնվում: Վերջապես մի գրավաճառ պատրաստակամություն է հայտնում տպագրելու պոեմն այն պայմանով, որ նա նախապես տասը ֆունտ տա իրեն տպագրության ծախսերի համար և իր հետ կիսի վաճառքի շահույթը:

Երիտասարդը համաձայնվում է, բայց որտեղից կարող էր տասը ֆունտ, թեկուզ տասը շիլլինգ գտնել: Նա թափառում է Լոնդոնի այն թաղամասերում, որտեղ ազնվականներն են ապրում՝ նպատակադրվելով գտնել և դիմել որևէ ասպետաճանաչի: Սակայն նա ոչ ոքի չէր ճանաչում, ոչ էլ որևէ մեկի դուռը ծեծելու համարձակություն ուներ:

Հոգնած՝ ձեռագրերը թևատակին, կանգնում է շքեղ հյուրանոցի մուտքի առաջ, որտեղ մի կառք էր սպասում: Բայրոնը, որն այդ հյուրանոցում էր իջևանել, դուրս է գալիս կառք նստելու: Նկատելով երիտասարդի հուսալքված և աղերսող հայացքը, Բայրոնը մոտենում է նրան և հետաքրքրվում, թե ի՞նչ է պատահել: Խեղճ երիտասարդը պատմում է իր ցավը: Վեհանձն բանաստեղծը նրան առաջնորդում է իր սենյակը և հարցնում.

— Ուրեմն դուք գժտվե՞լ եք ձեր հոր հետ:

— Այո,— պատասխանում է երիտասարդը գլխահակ:

— Եվ ձեզ տասը ֆունտ է հարկավոր, որպեսզի ձեր պոեմը տպագրվելու դեպքում շահույթի կեսը ստանաք:

— Այո, սըր,— պատասխանում է երիտասարդը մի փոքր սրտապնդված:

— Իսկ ի՞նչը կարող է հաշտեցնել ձեզ ձեր հոր հետ:

— Կարծում եմ, տասը ֆունտը, սըր, որովհետև այդքան է եղել իմ մսխած գումարը:

Այդ դեպքում վերցրեք այս տասը ֆունտը, վերադարձրեք ձեր հորը, իսկ գրավաճառը թող տպագրի ձեր պոեմը, եթե ուզում է: Վերցրեք նաև այս հինգ ֆունտը ձեզ համար: Ես ձեզ խորհուրդ եմ տալիս զգույշ և հեռատես լինել ու երբեք չվշտացնել, չվիրավորել ծնողներին: Դուք, ըստ երևույթին, չեք գիտակցում, թե ինչպիսի տխուր հետևանքներ կարող է ունենալ վատ վերաբերմունքը ծնողների նկատմամբ:

Հավաքեց և թարգմանեց
ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԸ



**Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՅԱՆ Լ., ԾԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Հ. (գեղարվեստական խմբագիր)։

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Լ.։

**ԻՆԴԵՔՍ՝ 77806** **ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.**